*Ապրիլի 22-ին լրանում է*
*ՎԼԱԴԻՄԻՐ ԻԼՅԻՉ ԼԵՆԻՆԻ*
*ծննդյան 110-ամյակը*

# ԱՇԽԱՐՀԻ ԱՄԵՆԱՄԵԾ ԸՆԴՈՒՆԱՐԱՆԸ

Աշխարհի ամենամեծ ընդունարանը. այդպես է անվանել ամերիկյան լրագրող, Ռուսաստանում սովետական կարգերի հաստատման մասնակից և վկա, հավատամքով կոմունիստ Ալբերտ Ռիս Վիլյամսը Վ. Ի. Լենինի Կրեմլի աշխատասենյակը:

Վլադիմիր Իլյիչ Լենինն այստեղ ընդունել է հազարավոր բանվորների ու գյուղացիների, կուսակցության ու կառավարության ղեկավար աշխատողների, պետական գործիչների, միջազգային հեղափոխական շարժման պատվիրակներ Վիլհելմ Պիկին, Ուիլյամս Գալլախերին, Մարսել Կաշենին, Գեորգի Դիմիտրովին, Կլարա Ցետկինին, արտասահմանյան գրողների, արվեստագետների և այլոց:

Հեղափոխության, քաղաքացիական կռիվների ծանր տարիներ էին, չէր բավարարում ոչ միայն հացը, այլև՝ էլեկտրաէներգիան: Էլեկտրաէներգիայի պակասի պատճառով հաճախ Կրեմլում լույս չէր լինում: Եղած ժամանակն էլ Լենինը օգտվում էր ընդամենը 16 վատտանոց լուսամփոփից: Լուսամփոփի կողքին միշտ դրված էին լինում սովորական մոմաջահեր, հոսանք չլինելու դեպքում նա աշխատում էր դրանց լույսի տակ:

Երբեմն հաց բոլորովին չի եղել: Նման դեպքում հաց չի ստացել նաև Վլադիմիր Իլյիչը: Ալբերտ Ռիս Վիլյամսը գրում է. «Լենինը այդ զրկանքները տանում էր ոչ թե ասկետական համոզմունքներից ելնելով, այլ կենսագործում էր հավասարության սկզբունքը»:

Իլյիչի աշխատասեղանի երկու կողմերում դըրված են առանցքի շուրջը պտտվող պահարանիկներ, որոնք պատրաստվել են առաջնորդի իսկ գծագրով: Այդ պահարանիկներում պահվել է զանազան գործերի, քաղաքական, տընտեսական, արվեստի ու գրականության վերաբերյալ տեղեկատու գրականություն: Աշխատասենյակում կան նաև առաջին անհրաժեշտության գրքերով լի երկու մեծ պահարան:

Լենինի գրադարանի նախկին գրադարանավարուհի Շ. Ն. Մանուչարյանցի վկայությամբ, Լենինն իր ունեցած ութ հազար կտոր գրքի աննշան մասն է պահել աշխատասենյակում, մնացածը ուղարկել է գրադարան, որպեսզի բոլորը կարողանան օգտվել դըրանցից: Նրա անձնական գրքերից կազմված գրադարանը ունի 88 բաժին և ընդգրկում է արվեստի, գրականության, գիտության, տեխնիկայի, քաղաքական զանազան հարցերի, տնտեսագի-

տության և այլ բնագավառներ: Գրադարանում կա արտասահմանյան տասնիցը լեզուներով գրքեր, հիմնականում անգլերեն, ֆրանսերեն, գերմաներեն, որոնց կատարելապես տիրապետում էր Լենինը: Դրանցից բացի նա գիտեր նաև հին հունարեն, լատիներեն, չեխերեն, շվեդերեն, լեհերեն, իտալերեն... Եվ այսքանն իմանալուց հետո, կուսակցության 10-րդ համագումարում, երբ նրան հարցնում են, թե քանի օտար լեզու գիտե, կատակով ասում է. «Գերմաներեն, իսպաներեն, անգլերեն՝ վատ, իսկ ֆրանսերեն՝ ավելի վատ»:

Աշխատասենյակի անբաժանելի մասն է եղել հեռախոսային կապի հանգույցը, որի միջոցով նա կապվել է երկրի տարբեր ծայրերի հետ, հետևել քաղաքացիական կռիվների ընթացքին, հաղորդագրություններ, հեռագրեր ընդունել, համապատասխան կարգադրություններ արել:

Նորաստեղծ սոցիալիստական երկրի Ժողովրդական կոմիսարների խորհրդի նախագահի օրն անցել է գերծանրաբեռնված: Այդքանից հետո նա ժամանակ է գտել նաև օրվա փոստը աչքի անցկացնելու, կարդալու Ռուսաստանում լույս տեսնող բոլոր թերթերն ու ամսագրերը: Լենինի կարդալու ունակությունը հայտնի է բոլորին: Նրա ուղեղը այնքան զարգացած էր և այնպիսի կատարելության հասած, որ մեկ հայացքով ընկալում էր ամբողջ էջը: Կողքից նայողներին միշտ թվացել է, թե նա ոչ թե կարդում է, այլ միայն թերթում, բայց երբ հարցրել կամ զրուցել են տվյալ նյութի շուրջը, Լենինը մանրամասն պատմել է կարդացածի բովանդակությունը, երբեմն վերարտադրելով աննշան թվացող նկարագրությունները, որոնք տող առ տող կարդալու դեպքում էլ հաճախ չեն մընում մարդու հիշողության մեջ:

Լենինի սահմանած ընդունելության կարգի համաձայն, իր մոտ եկողները ընդունարանում հինգ րոպեից ավել չէին սպասում: Երկու-երեք րոպեի ընթացքում նա կորզում էր եկողի այցելության նպատակը և համապատասխան վճիռ արձակում: Այս նույն սկզբունքը նա կիրառել է նաև Ժողկոմխորհի նիստերին: Ցանկացած հարցի վերաբերյալ զեկուցման համար տրվել է հինգ րոպե, ելույթների համար՝ դրա կեսից էլ քիչ...

Նորաստեղծ սովետական երկրի համար ժամանակը շատ թանկ էր: Ամեն ինչ պետք է կատարվեր արագ, ժամանակին: Ժողովրդական կոմիսարների խորհուրդը օրական մի քանի նիստ էր գումարում: Լուծում էին պահանջում բազմազան հարցեր, և լենինյան աշխատանքի այս սկզբունքի շնորհիվ ոչ մի հարց անպատասխան չէր մնում և ոչ էլ հետաձգվում էր:

Վլադիմիր Իլյիչի աշխատասենյակին կից նիստերի, խորհրդակցությունների անցկացման ոչ մեծ դահլիճն էր: Այստեղ է նաև այն քարտեզը, որի վրա նշված են ԳՈԷԼՌՈ-ի պլանով նախատեսված էլեկտրակայանների ցանցը, որոնք վաղուց իրականացվել են: Այդ քարտեզին ուշադիր նայողը կընկատի, թե տայգայից մինչև Հեռավոր արևելք որքան ազատ ու ամայի տարածություններ կան: Եթե այն համեմատենք այսօրվա քարտեզի հետ, կտեսնենք, թե երբեմնի այդ անմարդաբնակ վայրերում որքան նոր բնակավայրեր, արդյունաբերական խոշոր կառույցներ են ստեղծվել անցած տարիների ընթացքում, որոնք և լենինյան պլանների, գաղափարների իրականացման վկայականներն են:




Գիմնազիստ
Վոլոդյա Ուլյանովի
ոսկե մեդալը

# ՈՒԼՅԱՆՈՎՆԵՐԻ ԸՆՏԱՆԻՔԻ ՄԵԴԱԼՆԵՐԸ

«Լենինի համար կյանքի այդօրինակ ճանապարհ ընտրելու մեջ նշանակալի դեր է խաղացել Ուլյանովների ընտանիքը։ Պատահական չէ, որ Իլյա Նիկոլաևիչի և Մարիա Ալեքսանդրովնայի վեց զավակներն էլ հեղափոխական դարձան»։

Լ. Ի. ԲՐԵԺՆԵՎ

Ուլյանովսկում, Սվիյագա գետից քիչ հեռու, ոչ բարձր պատվանդանի վրա դրված է Իլյա Նիկոլաևիչ Ուլյանովի կիսանդրին։ Փոքր-ինչ ներքև, գյուղացի երեխայի քանդակ է՝ բաց գիրքը ձեռքին։ Իլյա Նիկոլաևիչն ուսուցիչ էր։

Աղքատ դերձակի որդու համար հեշտ չէր կրթություն ստանալը։ Մարիա Իլյինիչնա Ուլյանովան գրում է.

«Հայրս վաղ հասակից կրել է նյութական զրկանքներ, շատ շուտ ինքնուրույն դարձել, ինքն է հարթել կյանքի իր ճանապարհը, և դա կոփել է նրա բնավորությունը, դաստիարակել մեծ աշխատասիրություն, խստապահանջ վերաբերմունք իր պարտքը կատարելու հանդեպ»։

Հինգ տարեկան՝ զրկվում է հորից, ապրում աղքատության մեջ։ Հաճախ ստիպված է լինում ոտաբոբիկ գնալ գիմնազիա։ Սովորում է Աստրախանում և սովորում է այնպես, որ նրա հասակակիցներից ոչ մեկը (իսկ դրանք ազնվականների, վաճառականների, չինովնիկների երեխաներ էին) չէր կարող համեմատվել նրա հետ։ Ռուս բանահյուսության նրա շարադրությունները գնահատվել են իբրև լավագույն աշխատանքներ Աստրախանում և ողջ ուսումնական օկրուգում։

Պահպանվել է այն բնութագիրը, որ գիմնազիայի դիրեկտորը տվել է Իլյա Ուլյանովին։

«Աշակերտ Ուլյանովը... գիմնազիա ընդունվելու առաջին իսկ օրից... ամեն մի դասարանում... լավ ընդունակություններ ունենալով մշտապես սովորել է շատ լավ առաջադիմությամբ, գերազանց վարքով և ամեն տարի հաջորդ դասարան է փոխադրվել գովասանագրով, և այժմ ավարտում է գիմնազիայի ուսումնառությունը՝ բոլոր առարկաներից ունենալով հիանալի գիտելիքներ»։

Սա է Ուլյանովների ընտանիքի առաջին մեդալի պատմությունը։

Գիմնազիայից հետո Իլյա Նիկոլաևիչը փայլուն կերպով ավարտում է Կազանի համալսարանը։ Ապա իբրև ուսուցիչ աշխատում է Պենզայում, Նիժնի-Նովգորոդում։ 1869 թվականին նշանակվում է Սիմբիրսկի նահանգի ժողովրդական ուսումնարանների տեսուչ, իսկ շուտով՝ դրանց դիրեկտոր։ Նա ամեն կերպ օգնում էր աղքատների երեխաներին կրթություն ստանալ, հոգ էր տանում գիտելիքներով զինել


*Ուլյանովների ընտանիքը (1879 թ.)*

«այլածիններին». ցարի ժամանակ այսպես էին կոչում չուվաշներին, մորդվիններին, թաթարներին ու այլ ժողովուրդների:

Վլադիմիր Իլյիչի հայրը աշխատում էր չխնայելով ուժերը: Նա դարձավ երկրի լավագույն ուսուցիչներից մեկը: «Հայտնի է ողջ Ռուսաստանում»,— ասում էին նրա մասին:

Վլադիմիր Իլյիչի մայրը՝ Մարիա Ալեքսանդրովնան տարրական դպրոցների ուսուցչուհու կոչում ուներ, գիտեր ռուս գրականություն, պատմություն, տիրապետում էր գերմաներեն, ֆրանսերեն, անգլերեն լեզուներին, սիրում էր երաժշտություն և ինքն էլ լավ դաշնամուր էր նվագում: Բարձր կուլտուրայի տեր, արիասիրտ, ազնվաբարո, ուժեղ, տոկուն կին էր:

Պահպանվել է տասնամյա Աննայի լուսանկարը: Հայացքը լուրջ է ու կենտրոնացած. ձեռքին գիրք ունի: Ընթերցանությունը տան բոլոր երեխաների սիրած զբաղմունքն էր:

Տասներեքամյա Անյան կարդում էր Տոլստոյի «Պատերազմ և խաղաղությունը»: Գիմնազիայի միջին դասարաններում հասցրել էր կարդալ ռուս բոլոր դասականներին, հրապուրվել էր քննադատ Դմիտրի Պիսարևի ստեղծագործությամբ: Պիսարևը գտնում էր, որ օրվա ընթացքում հիսուն (կամ հարյուր) էջից պակաս կարդալու դեպքում երբեք զարգացած մարդ չես

դառնա: Եվ գիմնազիստուհին Աննան ջանում էր ըստ հնարավորին շատ կարդալ:

1880 թվականին Աննան ավարտում է գիմնազիան՝ արժանանալով արծաթե մեծ մեդալի:

Դեռևս մանկուց երազում էր աշխատել, ինչպես այն ժամանակ էին ասում, ժողովրդական լուսավորության անդաստանում:

«Մշտապես լսելով ժողովրդական դպրոցների ասպարեզում տարվող եռանդուն ու մեծ աշխատանքի մասին, մեր տանը՛ հանդիպելով ուսուցիչների լավագույն ներկայացուցիչներին, ես վաղ հասակից սկսեցի երազել ժողովրդական ուսուցիչ դառնալու մասին»—հիշում է Աննա Իլյինիչնան:

Գիմնազիան ավարտելուց հետո, նա երկու տարի դասավանդում է Սիմբիրսկի ուսումնարանում: Հետո սովորում է Պետերբուրգի կանանց բարձրագույն դասընթացներում: Գրում է բանաստեղծություններ, պատմվածքներ, թարգմանություններ անում:

Աննա Իլյինիչնան կրակոտ հեղափոխական էր, Վլադիմիր Իլյիչի զինակիցն ու ընկերը: Նա բախտ է ունեցել բազմիցս կատարել Իլյիչի հանձնարարությունները:

Հոկտեմբերյան հեղափոխությունից հետո առաջին տարիներին, նա ղեկավարում էր լուսավորության ժողովրդական կոմիսարիատի մանկության պաշտպանության բաժինը, հոգ էր տանում, որպեսզի բոլոր երեխաները կերակրված ու տաք հագնված լինեն, օգնում էր իմպերիալիստական և քաղաքացիական կռիվներում ծնողներին կորցրած երեխաներին:

Վլադիմիր Իլյիչ Լենինի մահից հետո Աննա Իլյինիչնան հուշեր է գրել նրա մասին: «Իլյիչի մանկական և դպրոցական տարիները» գիրքը քաջ հայտնի է մեր երկրի երեխաներին և նրանց արտասահմանյան շատ հասակակիցների: Եթե ձեզնից որևէ մեկը չի կարդացել այդ գիրքը, անպայման թող կարդա:

«Օգտակար գործունեության համար մարդուն հարկավոր է՝ 1. ազատություն, 2. աշխատասիրություն, 3. հաստատակամ բնավորություն, 4. խելք, 5. գիտելիքներ... Մարդն իրեն պետք է վարժեցնի աշխատանքի, սիրի այդ աշխատանքը, և աշխատանքը նրա աչքում պետք է դառնա նրա կյանքի անհրաժեշտ պահանջը»: Այս տողերը վերցված են գիմնազիստ Ալեքսանդր Ուլյանովի շարադրությունից:

Նա դասարանում ամենափոքրն էր, բայց սովորում էր բոլորից լավ ու պարգևներ ստանում: Բոլոր հանձնարարությունները կատարում էր ջանասիրաբար ու բարեխղճորեն: Առավոտ վաղ էր գնում գիմնազիա, որպեսզի օգնի ընկերներին:

Նրա սիրելի առարկան քիմիան էր և մյուս բնական գիտությունները:

«Այնպիսի եռանդով ու ոգևորությամբ էր նվիրվում իր հետաքրքրության առարկային, ջանում իր սիրելի առարկային հատկացնել յուրաքանչյուր ազատ րոպեն... Սեփական ուժերով փոքրիկ լաբորատորիա ստեղծեց, սպիրտայրոցի վրա զոդում էր զանազան ապակյա խողովակներ, հավաքում տեսակ-տեսակ բանկաներ, անոթներ, սրվակներ, մոմի մնացորդներ, որոնք ծառայում էին նրան իբրև գալվանոպլաստիկներ... Սպառելով կոլբաների ու թորանոթների աղքատիկ պաշարները, որ նա ձեռք էր բերում Սիմբիրսկում, Սաշան սկսեց քիմիական պարզունակ փորձասարքեր ստանալ Կազանից»,—իր հուշերում գրում է Աննա Իլյինիչնան:

Ալեքսանդրը գիմնազիան ավարտում է ոսկե մեդալով:

Պետերբուրգի համալսարանի ուսանող Ալեքսանդր Ուլյանովը պրոֆեսորներին զարմացնում էր իր տաղանդով և հազվագյուտ աշխատասիրությամբ: Աննա Իլյինիչնան մտաբերում է. «Հիշում եմ, թե ինչպես նա զարմացրեց ու շփոթեցրեց ինձ, երբ գարնանը... իր ուսանողության առաջին տարին, խոր ափսոսանքով ասաց. «Օրվա մեջ տասնվեց ժամից ավելի աշխատել չեմ կարողանում»:

Երբ Ալեքսանդրը գիտական աշխատանք էր գրում կենդանաբանությունից, նրա ընկերոջ՝ Չեբոտարյովի վկայությամբ, գիշեր-ցերեկ անդադրում պարապում էր լաբորատորիայում և տանը: Մի անգամ նա երեք գիշեր շարունակ չի քնել: Այդ ուսումնասիրության մասին գրված հոդվածներից մեկում ասվում է, որ Ալեքսանդր Ուլյանովը գիտության մեջ ներդրում է արել:

Մորը գրած նամակում Ալեքսանդրը հայտնում է.



*Ուլյանովների տունը Սիմբիրսկում*

«Սիրելի մայրիկ, օղակավոր որդերի մասին կենդանաբանական աշխատանքի համար (դեռևս ամռանն էի սկսել այդ աշխատանքը) ստացա ոսկե մեդալ»:

Աննա Իլյինիչնան այսպես է հիշում եղբոր գրած նամակի մասին. «1886 թվականի փետրվարին նա ներկայացրել էր իր աշխատանքը... որը համալսարանի տարեվերջյան հանդեսում պարգևատրվել էր «Առաջադիմողին» անունը կրող ոսկե մեծ մեդալով: Հիշում եմ, թե ինչպես կարճ ու համեստորեն էր հաղորդում նա այդ մասին մայրիկին իր նամակով... և ինչպես էր մայրս դառնորեն լաց լինում, որ մեկ ամիս առաջ վախճանված հայրս չէր կարող ուրախանալ այդ լուրով»:

Ալեքսանդրը գրավել էր աշխարհահռչակ գիտնականներ Բուտլերովի, Մենդելեևի ուշադրությունը: Ոսկե մեդալով պարգևատրելու հանդիսավոր արարողության ժամանակ, ռեկտորը Ալեքսանդրին համալսարանի հպարտությունն է կոչել: Լենինի եղբայրը, անկասկած, կհռչակվեր իբրև ականավոր գիտնական: Բայց նա դարձավ հերոս-հեղափոխական...

Ալեքսանդրը մտավ ընդհատակյա հեղափոխական խմբակի մեջ: Եվ երբ խմբակի անդամները վճռեցին սպանել ցարին, Ալեքսանդրը, որ շատ լավ քիմիա գիտեր, իր ընկերներից մեկի հետ հանձն առավ դինամիտ և ռումբեր պատրաստել: Սակայն չհասցրեց. նրան և ընկերներին, որոնք պատրաստում էին այդ մահափորձը, ձերբակալեցին:

Որդուն ներումն շնորհելու ցարին ուղղված իր խնդրագրում Մարիա Ալեքսանդրովնան գրել է. «Նա տարված էր գիտությամբ այնքան, որ հանուն գիտական պարապմունքների իրեն զրկում էր բոլոր հաճույքներից: Համալսարանում նա շատ լավ համարում ուներ: Ոսկե մեդալը նրա առաջ բաց էր անում պրոֆեսորական ամբիոնի ճանապարհը... Նա եռանդով աշխատում էր կենդանաբանական կաբինետում, պատրաստելով մագիստրոսի դիսերտացիա, որպեսզի շուտ ոտք դնի ինքնուրույն ճանապարհի վրա և հեշտացնի լինի ընտանիքին... Եվ ահա, երբ լրիվ դասընթացն ավարտելուն մնացել էր ընդամենը երկու ամիս... հանկարծ ես զրկվում եմ իմ ավագ որդուց...»

Որդին, գիտենալով, թե ինչ է սպասում իրեն, տեսակցության ժամանակ ջանում էր հանգստացնել մորը: «Նա հիշեցնում էր մորը,— մտաբերում

է Աննա Իլյինիչնան,— կրտսեր զավակների մասին, այն մասին, որ իրենից հետո եկող եղբայրն ու քույրը կավարտեն ոսկե մեդալով և մխիթարություն կլինեն նրա համար»։ Խոսքը վերաբերում էր գիմնազիայում սովորող Վլադիմիրին և Օլգային։

...Ցարական դատարանը հեղափոխականին մահվան դատապարտեց՝ կախաղանի միջոցով։

Ալեքսանդր Իլյիչ Ուլյանովն ապրեց քսանմեկ տարի։

Թե ինչպես է սովորել Վլադիմիր Ուլյանովը, ամենից լավը, թերևս, ասված է Աննա Իլյինիչնայի «Իլյիչի մանկական և դպրոցական տարիները» գրքում։ Ավագ քույրը հիշում է, թե ինչպես էր եղբայրը գիմնազիայից տուն գալուն պես, հայտնում ստացած հինգերի մասին։

«Ես նստած եմ հայրիկի աշխատասենյակում և բռնում եմ այն զոհունակ ժպիտը, որ փոխանակում են հայրիկն ու մայրիկը, հայացքով հետևելով գիմնազիստի համազգեստով, գլխարկի տակից դուրս ցցված շիկակարմիր մազափնջով, դռների մեջ հապճեպ հայտընվող նրա ամուր կազմվածքին։ Առարկաներն, իհարկե փոխվում էին, երբեմն լսվում էր. «Լատիներենից՝ հինգ, հանրահաշվից՝ հինգ»,— բայց էությունը նույնն էր, սովորաբար լինում էր միայն մի թվանշան՝ հինգ»։

Արտակարգ հիշողություն ուներ Վոլոդյան, բավական էր մի անգամ կարդար տեքստը, և նա արդեն գիտեր դա գրեթե անգիր։ Իլյա Նիկոլաևիչը երկյուղ ուներ, թե որդու մեջ աշխատասիրություն չի դաստիարակվի, ամեն ինչ չափազանց հեշտ էր տրվում տղային։ Բայց իզուր էր այդ երկյուղը։

Աննա Իլյինիչնան հիշում է, թե ինչպես մի անգամ լսելով քրոջ՝ Օլգայի անվերջանալի վարժությունը դաշնամուրի վրա, Վոլոդյան ասաց. «Ահա թե ում աշխատասիրությանը պիտի նախանձել»։ Վոլոդյայի այդ խոսքի մեջ ոչ միայն հիացում կար քրոջ նկատմամբ, այլև մտորում. «Իսկ ես կկարողանա՞մ։ Կկարողանա՞մ այդպես»։ «Եվ նա սկսեց զարգացնել իր մեջ աշխատասիրություն, որ հետագա տարիներին զարմացնում էր բոլորին»,— շարունակում է Աննա Իլյինիչնան։

Չի եղել մի դեպք, որ Վոլոդյա Ուլյանովը դասը չսովորած գնա պարապմունքի։ Մի անգամ նրա մորաքրոջ որդին՝ Կոլյա Վերետեննիկովը հարցնում է նրան. «Մի՞թե այնպես չի պատահում, որ դու դասդ չպատրաստես»։

«Չի՛ եղել և չի՛ լինի»,—աներկբա պատասխան է տալիս Վոլոդյան։

Նա սիրում էր զանազան խաղեր, լողում էր, չմուշկներ քշում, բայց գըրքերը նրա համար դասերն էին։ Այնպես, ինչպես Սաշան էր, որին Վոլոդյան ջերմորեն սիրում էր, նա առավոտ վաղ էր գնում գիմնազիա, որպեսզի օգներ ընկերներին՝ բացատրեր բարդ խնդիրները, օգներ տեքստը թարգմանելիս։

Գիմնազիայի վերջին տարիներին Վլադիմիր Ուլյանովը հատկապես շատ էր կարդում։ Նա պատրաստվում էր հեղափոխական աշխատանքի, որը դարձավ նրա կյանքի նպատակը։

*Մանկական սենյակը*





Վ. Ի. Ուլյանովի աշխատասեղանը

Վլադիմիրը հասունության ատեստատի քննություններ էր հանձնում, երբ Սիմբիրսկ հասավ Ալեքսանդր Ուլյանովի կորստյան սոսկալի բոթը:

Ջերմորեն սիրված եղբոր մահը ծանր վիշտ էր Վլադիմիրի համար: Բայց նա համառորեն շարունակեց հանձնել քննությունները: Հարցերին պատասխանում էր անսխալ, առանց կմկմալու: Նա հասկանում էր. ամենաչնչին անճշտություն՝ և քննողը կիջեցնի գնահատականը:

Վլադիմիր Ուլյանովն այնքան խոր և հիմնավոր գիտելիքներ էր ցուցաբերում, որ ինչքան էլ ուզեին պատրվակ գտնել, չէին կարող: Արդեն այստեղ երևում էր նրա տոկուն, աննկուն բնավորությունը, ինքնատիրապետումը:

Վլադիմիր Ուլյանովին տրված բնութագրում ասվում է. «Շատ տաղանդավոր է, մշտապես ջանասեր ու կարգապահ... Պարգևատրվել է ոսկե մեդալով՝ իբրև առաջադիմությամբ, զարգացմամբ ու վարքով ամենից արժանավորը»: Լավագույն շրջանավարտների անունները գրում էին մարմարյա տախտակի վրա, բայց Վլադիմիր Ուլյանովի, հեղափոխականի եղբոր, անունը այնտեղ չկար...

...Ալեքսանդրի կործանումից հետո Վլադիմիր Ուլյանովն ասաց. «Ո՛չ, մենք այս ճանապարհով չենք գնա: Այդ ճանապարհով չպետք է գնալ»: Սա հայտնի է Մարիա Ուլյանովայի հուշերից. «Եվ ահա այդ ժամանակից նա սկսեց պատրաստվել այն ճանապարհի համար, որը համարում էր Ռուսաստանը ցարի և կապիտալի լծից ազատելու միակ ճիշտ ուղին»:

Դմիտրի Իլյիչը հիշում է, որ Օլգան ու Վոլոդյան շատ համերաշխ ու մտերիմ էին: Զնայած Օլգան կրտսերն էր, զարգացմամբ եղբորից ետ չէր մնում: Չորս տարեկանում փոքրիկ աղջնակը գրում-կարդում էր: Նա շատ էր կարդում, լավ լսողություն ուներ, պարապում էր երաժշտությամբ: Մարիա Իլյինիչնան Օլգայի մասին գրում է. «Առանց չափազանցության կարելի է ասել, որ նա չէր աշխատում այն ժամանակ միայն, երբ քնած էր: Գիմնազիստուհի Օլյան գերազանց էր սովորում, նա դասարանից դասարան էր փոխադրվում «Բարեկրթության և առաջադիմության համար» պարգևներ ստանալով:

Ավարտելիս արժանանում է մեդալի «Օրիորդաց գիմնազիայի դասընթաց-



ների ավարտողներից արժանավորին»՝ այսպես էր գրված այս մեդալի հակառակ երեսին: Դեռևս գիմնազիայում Օլգան այն հաստատ համոզման էր եկել, որ ինքը կոչված է դպրոցում աշխատելու: Նա գտնում էր, որ ուսուցչությունը «օգտակար և վսեմ զբաղմունքներից մեկն է»:

1889 թվականին Ուլյանովների ընտանիքը տեղափոխվում է Սամարա: Ոսկե մեդալով ավարտելով գիմնազիան, Օլգան իրավունք ուներ աշխատել իբրև ուսուցչուհի, նա խնդրագիր է ներկայացնում Սամարայի քաղաքային դումային, բայց մերժում է ստանում:

Օլգան մեկնում է Պետերբուրգ, ընդունվում Կանանց բարձրագույն դասընթացները: Ուսումնասիրում է գիտական կոմունիզմի հիմնադիրների աշխատությունները, կոնսպեկտավորում Կարլ Մարքսի «Կապիտալի» առաջին հատորը:

1891 թվականի ապրիլին Օլգան հիվանդանում է տիֆով: Վլադիմիրը, որ այդ տարին ընդունվել էր Պետերբուրգի համալսարանը, քնքշորեն հոգ էր տանում նրա մասին, հաճախ էր այցելում հիվանդանոց: Երբ քրոջ վիճակը շատ է ծանրանում, հեռագրով կանչում է մորը: Օլգան վախճանվում է քսան տարեկան հասակում:



Սիմբիրսկի 1-ին գիմնազիայի շենքը, որտեղ սովորել է Վ. Ի. Լենինը



Հյուրասենյակը

«Նա, անկասկած, կդառնար նշանավոր ու նվիրված հեղափոխական»,— այդ սքանչելի աղջկա մասին ասել է Աննա Իլյինիչնան:

Ուլյանովների վեց մեդալներից պահպանվել է մեկը՝ գիմնազիստ Վլադիմիրի ոսկե մեդալը: Մեդալի առաջին երեսին շրջանաձև մակագրություն է՝ «Առաջադիմողին»: Ներքևում՝ հին հռոմեացիների իմաստության աստվածուհու՝ Միներվայի պատկերն է՝ դափնեպսակը ձեռքին:

1921 թվականին, Պովոլժիեի սովի ժամանակ, Ժողովրդական կոմիսարների խորհրդի նախագահ Վլադիմիր Իլյիչ Լենինն իր ոսկե մեդալը տալիս է սովյալներին օգնող կոմիտեին: Բայց կոմիտեում աշխատող կոմունիստները պահպանում են դա պատմության համար, գալիք սերունդների համար:

Եվ ահա երկար տարիներ այդ մեդալը պահպանվում է Մոսկվայում՝ Վլադիմիր Իլյիչ Լենինի կենտրոնական թանգարանում:

ՅՈՒ. ՊԵՍԻԿՈՎ



# ՎԵՐՋԱՊԵՍ ԵՍ ԴՊՐՈՑ ԵՄ ԳՆՈՒՄ

ՎԱԽԹԱՆԳ ԱՆԱՆՅԱՆ

## ՄԱՅՐԵՆԻ ԼԵԶՈՒ

Սա արդեն իմ սիրած առարկան էր: Դասագիրք չունեի, բայց որովհետև հանդերում մենության մեջ գեղարվեստական գործեր շատ էի կարդացել, բանավորս տարբերվում էր ուրիշներից: Ինձ թվում էր, որ մի քանի այլ առաջադեմների հետ միասին Բավականն է ինձ հավասար քայլում: Նա ապրում էր Դիլիջանում և չէր կորցնում այն թանկագին ժամանակը, որ ես կորցնում էի դպրոցի երկար ճանապարհին: Սակայն այստեղ ևս ես մի մեծ թերություն ունեի. չգիտեմ դասագիրք չունենա՞լն էր պատճառը, թե՞ այն, որ առհասարակ կյանքումս քերականությունը չեմ սիրել և ես քերականությունից կաղում էի երկու ոտքով:

Վիճակս առանձնապես դեպի լավը փոխվեց, երբ հայոց լեզվի ուսուցիչ նշանակեցին Ներսիսյան դպրոցը նոր ավարտած մի երիտասարդի՝ պարոն Եղիշե Ծամախյանին: Ա՜յ հոգի մարդ, ա՜յ իսկական ուսուցիչ: Այնպես է հալում գլուխդ լցնում, որ առանց քերականության էլ, հայոց լեզուն ուղեղիդ ծալքերում տեղավորվելուց հետո, հարկավոր դեպքում դուրս է հորդում ողջ ճոխությամբ:

Իր բարակ երկայն հասակով մեկ շիփ-շիտակ կանգնած է դասարանի առաջ և երկնագույն աչքերով մեկ առ մեկ հետազոտում է յուրաքանչյուրիս դեմքը. երևի ցանկանում է հասկանալ, թե մեզնից ով ինչ է:

— Հայպա, պատանի՛ Հերկուլես, թվի՛ր կարդացածդ գրքերը...

Ամասիա Մատինյանը անակնկալի եկավ այդ հարցից: Ապա իրեն հա-

---

Սկիզբը՝ №№ 1—3-ում:

վաքեց և համարձակ պատասխանեց.

— Կարդացել եմ վարժապետի տված բոլոր դասերը:

— Իսկ դասերից դո՞ւրս...

Լուռ է, բայց գլուխը չի խոնարհում, ընդհակառակը՝ հանդուգն նայում է պարոն Եղիշե Շամախյանին, որը այժմ մեր ոչ միայն դասատուն է, այլև դպրոցի վարիչը, այսպես ասած՝ ավագ վարժապետը: Եվ Ամասիայի հայցքն ասում է. «Իմ պատվի հետ ինչո՞ւ ես խաղում դասարանի առաջ, պարո՛ն ավագ վարժապետ...»

— Ես պատասխանե՞մ...

— Ես ասե՛մ, պարո՛ն վարժապետ...

Այս ու այն կողմից մատ են բարձրացնում ավելի համարձակները: Իսկ մենք՝ գյուղից եկած տրեխավորներս լուռ ենք: Բայց Եղիշե Շամախյանին, ըստ երևույթին, տրեխավորների մեր դասն էր հետաքրքրում:

— Անո՞ւնդ...

Տեղից վեր կացավ միջահասակ, ուսերը նեղ, բայց լուրջ և խելացի դեմքով մի մանուկ՝ մեր քահանայի կրտսեր որդին.

— Թումանյան Հրաչիկ:

— Դասերից դուրս գրականություն կարդո՞ւմ ես:

— Այո՛:

Ու թվեց մի քանի գրքեր, որ Էջմիածնից հետը բերել էր Գևորգյան ճեմարանում սովորող իր ավագ եղբայր Սիրաքը:

— Բավականությա՞մբ ես կարդում, թե՞ հարկադրված:

— Բավականությամբ:

— Ապրես, նստի՛ր: Իսկ ձեր գյուղի մյուս տղանե՞րը...

Այստեղ Դոդոնը չհամբերեց, վեր թռավ ու մատը բարձրացնելով՝ գոչեց.

— Պարո՛ն վարժապետ, մեր մեջ ամենից շատ կարդացողը իմ ընկեր Վախթանգն է:

— Վախթա՞նգ... այս ցուցակում




# ՍՈՎՈՐԵԼ ԼԵՆԻՆԻՑ, ԿԱՐԴԱԼ ԼԵՆԻՆԻՆ

Պիոներական կազմակերպությունը Վ. Ի. Լենինի անվամբ կոչելու 55-րդ տարեդարձի օրը՝ 1979 թվականի հունվարի 23-ին մեկնարկ վերցրեց «Պիոներները ամբողջ երկրի հավատարիմ են գործին Լենինի» համամիութենական երթը: Գործի անցնելով, Արտաշատի շրջանի ցածր դասարանների պիոներական ջոկատները հեռակա էքսկուրսիաներ կատարեցին «Լենինի անունը հայրենիքի քարտեզի վրա» նշանաբանով, հավաքույթներ ու զրույցներ անցկացրին «Մենք պատանի լենինյաններ ենք», «Սովորում ենք սովորել Լենինից», «Վոլոդյա Ուլյանովի սիրած խաղերը» թեմաներով: Բարձր դասարանների ջոկատները ուսումնասիրեցին մեծ առաջնորդի կյանքն ու հեղափոխական գործունեության տարբեր շրջանները: Լենինի «Պետություն և հեղափոխություն», «Ինչպես կազմակերպել մրցությունը» աշխատությունների վերաբերյալ դասախոսություններ կարդացին: Արտաշատ քաղաքի № 6 դպրոցում ամեն շաբաթ կազմակերպվում են քաղինֆորմացիաներ, որոնց ընթացքում մտքեր են փոխանակում աշխարհում կատարված քաղաքական իրադարձությունների շուրջը: Շրջանի երկու հարյուր առաջավոր պիոներներ մարտ ամսին պիոներական գնացքով մեկնեցին լենինյան վայրեր:

Վախթանգ անուն չկա:

— Վախթա՞նգը... Վախթանգը Ստեփան Անանյա՛նն է, ո՛վ է...

— Բայց Վախթանգը ո՞նց է Ստեփան,— ուսերը թոթվեց վարժապետը:

— Ես ի՞նչ գիտեմ, դրա տերտերհո՛րը հարցրու,— քմծիծաղով պատասխանեց Դողոնը՝ Հրաչիկին ցույց տալով:

Քիչ մնաց թաքնվեի սեղանի տակ:

Վարժապետը իր կապույտ ու բարի աչքերով նայում է ինձ. հասկացել է, որ իմ մասին է խոսքը:

— Կթվե՞ս կարդացածդ գրքերից մի քանիսը:

— Խի՞ չեմ թվիլ... Բեն-Հուր... Պոմպեյի կործանումը... — գլխահակ քրթմնջացի ես:

— Ուրի՞շ...

— Ուրիշ... Հոգսը... Պանը... Կայծեր... Աշոտ Երկաթ... Մահը...

— Մա՞հը... Նար-Դոսի՞:

— Այո՛...

— Ու հասկացա՞ր...

— Որ սկսում եմ, մինչև վերջացնելս պոկ չեմ գալիս... Դե որ պոկ չեմ գալիս, երևի հասկանում եմ, էլի...

Ծիծաղեց, շեկ դեմքը ողողվեց բարությամբ:

— Ճիշտ ասացիր, փոքրի՛կ, որ պոկ չես գալիս, ուրեմն հասկանում ես... Ուրի՞շ...

— Է, ո՞ր մեկն ասեմ... Օրինակ՝ «Էռնանի»:

— Նույնիսկ Էռնանի՞ն... Ու հասկացա՞ր...

— Դժվար էր առաջ գնում, չափածո էր... Բայց դե ուրիշ գիրք չունեի, ի՞նչ անեի... Հա՛, Աստվածաշունչն էլ եմ կարդացել... Գոմաձորի իմ խնամոնց տանը... Էնքան շատ էր, որ կարդալով չէր վերջանում...

Ուսուցիչս անձայն ծիծաղում է ու գլուխն օրորում:

— Ուրեմն ինչ ձեռքդ է ընկնում՝ կարդո՞ւմ ես... Այդպես չի կարելի, փոքրի՛կ... Իսկ որտե՞ղ ես կարդում...

— Ամառը սարերում, փորիս վրա պառկած...

— Փորիդ մասին չի հարցնում է՛, անտա՛շ սարեցի, գրքի մասին է հարցնում:

Ամասիայի ձայնն է. տոնից հասկացա, որ ներսից խլթխլթում է:

— Մի՛ խանգարեք... Իսկ ձմե՞ռը...

— Ձմեռը Գոմահանդի մեր օլաջաղում*... Իսկ երբ գյուղ ենք տեղափոխվում, գոմում եմ կարդում...

— Իսկ մութ չէ՞...

— Մութն է, համա՝ գոլ, լավը... հետո՝ մարխ եմ վառում...

— Մաքուր հայերեն խոսիր... Իսկ գոմահոտը չի՞ խանգարում,— կատակեց վարժապետս:

Ոմանք ծիծաղեցին, ես էլ հետները:

— Չէ՛, վարժապե՛տ, մեր Ջեյրան էրնջի հոտը ինձ համար ավելի դուրեկան է, քան... քան թե...

Լավ էր ժամանակին զսպեցի ինձ, թե չէ քիչ էր մնում ասեմ՝ «Քան թե Հասմիկ Մատինյանից եկող դուխու հոտը...»

Լավ ազատվեցի աղետից, բայց իմ ընկերները հասկացել էին, թե ինչ էի ուզում ասել: Գյուղի ճամփին Գևորգը ինձ նախատեց.

— Աղա՛, շաշ ե՞ս, էն ի՞նչ էիր ուզում ասել...

— Ինչ որ սրտումս կար:

— Ախր նրա ախպերը քեզ բմբլահան կանի:

— Բա մենք մեռած ե՞նք,— աքլորացավ Դողոնը:

Իսկ Հրաչիկը, որ թե՛ ֆիզիկապես թույլ էր, թե՛ բնավորությամբ խաղաղ, ավելացրեց.

— Դրանց հետ գործ չունենք, դրպրոցն էլ է դրանց ծնողների ձեռքին, վարժապետներն էլ...

Վերևի երկխոսությունը հանգամանորեն մեջ բերի, ցույց տալու, թե մեր նոր ավագ ուսուցչի համակրանքն ո՞ւմ

* Օլաջաղ — (թուրք.) անասնապահի ժամանակավոր խրճիթ:

կողմն էր, գյուղաքաղաքի անբաններին՝, թե՞ աշխատավոր մարդկանց չարքաշ զավակների: Եվ Եղիշե Ծամախյանը մինչև իր կյանքի ողբերգական վախճանը խրախուսեց ու պաշտպան կանգնեց մեզ: Իր ժողովրդասիրական հայացքները նա բերել էր Ներսիսյան դպրոցից և շատ շուտով սկսեց անճկատելի կերպով ամեն դասի հետ ներարկել մեր գիտակցության մեջ այն նորը, որին ուխտագրվել էր դեռևս դպրոցական նստարանից: Հետագայում նա դարձավ կուսակցության Դիլիջանի գավառային կոմիտեի քարտուղար և ընպանվեց բանդիտների ձեռքով: Մեր գյուղը հիմա կոչվում է նրա անունով:

Այսպես, երբ գարունը հասավ մեր դպրոցի բակը և բողբոջեցին այնտեղ կանգնած լորենիները, պարոն Ծամախյանը մեզ դուրս հրավիրեց դասարանից և ասաց.

— Երեխանե՛ր, մի քանի օր մենք պիտի պարապենք բակում, բացօթյա:

Խուռներամ բակ խուժեցինք և այն ժամանակ Անանուխն անհամարձակ հարցրեց.

— Իսկ դասագրքե՞րը...

— Ահա ձեր դասագիրքը,— պատասխանեց ուսուցիչը՝ դեղին կազմով մի գրքույկ ցույց տալով:— Նստոտեցե՛ք քարերին, հիմա ընթերցանության ժամ է:

Երբ ամեն մեկս մի դիրքով տեղավորվեցինք, մեր վարժապետն սկսեց ընթերցումը.

— «Փայտաշեն խրճիթից մինչև Սպիտակ տունը...» Սա այս վիպակի վերնագիրն է:

Հանգիստ, տպավորիչ առոգանությամբ և շեշտերով սկսեց կարդալ կյանքի վեպն այն պատանու, որ մեր հասակում մեզ նման զբաղվել է սև աշխատանքով, ապրել է փայտաշեն խրճիթում, հենց փոքրուց սիրել է աշխատանքը ու իրեն նպատակ է դրել դառնալ մեծ մարդ և օգնել հայրենակիցներին: Ահա քայլ առ քայլ

# ՄԵԾԱՀԱՍԱԿՆԵՐԻՆ ՀԱՎԱՍԱՐ

Քաղցրաշենի դպրոցում կան 1950 թվականից սովետական բանակ մեկնած քաղցրաշենցի երիտասարդների լուսանկարներով ցուցափեղկեր: Աշակերտների ուժերով կառուցվել է հրաձգարան: Պիոներ-դպրոցականները մեծ օգնություն են ցույց տալիս տընտեսությանը հատկապես բերքահավաքի ժամանակ: Գյուղում բոլորին հայտնի է վեցերորդ դասարանցի Արսեն Խալաթյանի անունը: Արսենը օրը 550 կիլոգրամ խաղող է հավաքում, իսկ այդ հավասար է մեծահասակների օրվա առաջադրանքին:

Կատարած լավագույն գործերի համար քաղցրաշենցի դպրոցականները պարգևատրվեցին ՍՍՀՄ լուսավորության մինիստրության, ՀամԼԿԵՄ Կենտկոմի, ԴՕՍԱԱՖ-ի Կենտկոմի պատվոգրով և 30 հազար ռուբլու արժողությամբ փքովի լողավազան ստացան նվեր:

# ԱՐՎԵՍՏՆ ԱՋՆՎԱՑՆՈՒՄ Է

«Գեղեցիկի աշխարհում» երթուղու գծով շրջանում անցկացվել են երգի-պարի մրցույթներ, բացվել են հըմուտ ձեռքերի խմբակների անդամների, պատանի նկարիչների աշխատանքների ցուցահանդեսներ: Առանձին ջոկատներում և դրուժինաներում կազմակերպվել են գեղարվեստական գրքերի քննարկումներ, կոլեկտիվ կինոդիտումներ: Հունվարին շրջանի պիոներները մասնակցեցին «Թատրոնը և երեխաները» թեմայով միամսյակին, հանդիպումներ ունեցան Արտաշատ քաղաքի Ամո Խարազյանի անվան պետական թատրոնի ստեղծագործական կոլեկտիվի հետ, դիտեցին «Պատ-




նա նվաճում է արհեստները, զբաղվում է նույնիսկ ատաղձագործությամբ և աճում է մտքով ու բնավորությամբ: Ի՜նչ համոզիչ, ի՜նչ լավ էր հեղինակը տվել Հյուսիսային Ամերիկայի մի հետամնաց անկյունում ապրող այն մանուկի առօրյա կյանքը, նրա հոգսերն ու հետաքրքրությունները և նրա լավատես հայացքն ապագայի նկատմամբ:

Եղիշե վարժապետը կարդում էր կենտրոնացած ու ներշնչված: Ամենահետաքրքիր տեղերն ընթերցելիս մեզ զայրացնում էր փողոցով անցնող կառքերի աղմուկը, անգամ Աննայենց բակում հաչող շան ձայնը:

Չեմ կարող ասել, թե բոլորն էլ հավասար ուշադրությամբ էին հետևում այն գեղեցիկ պատմության ընթացքին: Օրինակ, Ասքանազի մարմինը կարծես որդ էր ընկել. արդեն սկսել էր բութ մատով «մուշտի տալ» մոտը նստած Մայմեխ Հրաչիկին: Ամասիայի անհամբեր շարժումներն ասում էին. «Ե՞րբ է վերջանալու, որ տուռնիկի վրա ստոյկա տամ...» Հրանուշ Զաքարյանը ամբողջովին կլանված՝ երևի մտածում էր. «Երանի երկար տևի այս պատմությունը»: Իսկ Դողոնը գլուխը դես-դեն էր թեքում, որ գարնանային արեգակից պաշտպանի ճառագայթներին բոլորովին չդիմացող իր կապտավուն աչքերը:

Երբ մեր բոլորի հերոսը վերջապես փայտաշեն խրճիթից հասավ Միացյալ Նահանգների կոնգրեսը՝ Սպիտակ տունը և ընտրվեց երկրի պրեզիդենտ, պարոն Եղիշեն ընդհատեց ընթերցումը և ասաց.

— Մնացածը՝ վաղը...

Կարծես արթնացանք անուշ քնից:

Հաջորդ օրը նույն ժամին մենք նույն լորենիների տակ էինք: Այնքան դուրեկան էր գարնանամուտի այդ օրը, որ ոչ մեկս դասասենյակ մտնելու տրրամադրություն չուներ:

Շարունակության մեջ դեպքերը գր-

ալով թափ էին առնում: Ահա պրեզիդենտ Աբրահամ Լինկոլնը բարձրացնում է ազատության դրոշն ու իր բանակները տանում դեպի հարավ՝ նեգր ստրուկներին կեղեքողների դեմ: Մեծ կռիվներ են տեղի ունենում ազատատենչ ժողովրդի և ագահ ստրկատերերի միջև, և այդ կռվում հաղթանակում է արդարությունը. մեծ զոհերի գնով նեգրերն ազատագրվում են:

Այդ պատերազմի դրվագներն ընթերցելիս մեր հանդարտ ու խաղաղ ուսուցիչը կերպարանափոխվում էր, շեկ արտևանունքների արանքներից կարծես կայծեր էին դուրս հորդում ու ինքը ամբողջովին դառնում էր ցասում ու վրեժ: Բռնակալության դեմ արտասանած նրա յուրաքանչյուր խոսքը իջնում էր մուրճի նման և կրկնակի ուժով արձագանք տալիս մեր մատաղ հոգիների մեջ, այդպիսի հզոր խոսքի մենք վաղուց էինք կարոտ:

Այդ վիպակը միանգամից բացեց մեր աչքերը: Մեր շրջապատում անարդարություն և բռնակալություն մենք տեսնում էինք, բայց մեր խակ ուղեղում ամեն ինչ դեռ խառն էր ու շփոթ: Եղիշե Ծամախյանը մեր դասի համար այնպիսի նյութ էր ընտրել, որի նպատակն էր հստակություն մտցնել մեր նոր կազմակերպվող գիտակցության մեջ:

Երբ ընթերցումը վերջացավ, տեղից վեր կացավ Գոլովինոյի անտառի մենաբնակ Վանուշը և խոշոր գլուխը բարձր պահած հարցրեց.

— Վարժապե՛տ, իսկ հիմա ստրկատերեր չկա՞ն...

— Ինչո՞ւ չէ... Աշխարհում ստրկությունը դեռ չի վերացել:

— Աշխարհի հետ գործ չունեմ... Ես Դիլիջանի մասին եմ հարցնում:

Վարժապետը խոհեմություն ունեցավ լռելու:

— Երեխանե՛ր, վաղը [illegible] կընթերցենք մի այլ գրքույկ:

Ասաց ու վեր կացավ:



վի համար», «Սամվել», «Եզովպոս» ներկայացումները: Դաստիարակության գծով դպրոցի դիրեկտորի տեղակալ Քնարիկ Վարդանյանի ղեկավարությամբ դպրոցում ստեղծվել է ցուցահանդես: Ցուցադրվել են «Հմուտ ձեռքերի» խմբակի անդամների շուրջ չորս հարյուր քանդակներ, փայտի փորագրություններ, գոբելեններ, գեղանկարներ ու թեմատիկ լուսանկարներ: Այցելուները ծանոթությունն ըսկըսում են Արտավազդ Արզումանյանի, Զարուհի Գասպարյանի, Գևորգ Ավագյանի, Այծեմնիկ Ամիրյանի, Արթուր Ստեփանյանի, Մարինե Կիրակոսյանի աշխատանքներից:

Արվեստը օգնում է աշակերտներին նաև ուսման և կարգապահության բարձրացման հարցերում: Օրինակ, Արմենը, մինչև խմբակի անդամ դառնալը վատ էր սովորում և դժվար դաստիարակվողի անուն էր հանել: Երբ ընկեր Վարդանյանը ներգրավեց նրան խմբակի աշխատանքներում, տղան վերափոխվեց: Նրա կատարած «Բնապատկեր», «Աղջիկը» աշխատանքները ցուցահանդեսի լավագույն նմուշներից են:

## ԱՇԱԿԵՐՏԱԿԱՆ ԳԻՏԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹՅՈՒՆԸ

«Գիտելիքների աշխարհում» երթուղու գծով, ջոկատներում և դրուժինաներում ստեղծվել են առարկաներին ու գիտություններին նվիրված խմբակներ ու խմբեր, որոնց աշխատանքները ղեկավարում է շրջանի «Աշակերտական գիտական ընկերությունը»: Ընկերության նախագահն է № 2 դպրոցի 9-րդ դասարանի աշակերտ, ՀԼԿԵՄ Արտաշատի շրջկոմի բյուրոյի անդամ Արթուր Խուդոյանը: Ընկերության անդամները հանդիպում-




ԱՍԵՆ ԲՈՍԵՎ

# Ջաննիի երգը

Փողոցներով սայլն է անցնում,
Ձայնն է լսվում՝ ճռինչի.
Մի գյուղացի նստած սայլին՝
Վաճառում է կանաչի:

Փոքրիկ Ջաննին հարմարեցրեց
Հեծանիվն իր այդ գործին,
Իրենց գյուղից քաղաք բերեց
Սոխ, բողկ, պղպեղ... վաճառքի:

Ձիլ ճռռում են ոտնակները,
Ու երգում է նա ճամփին.
Երբ երգում է, Ջաննին գիտի,
Հեշտ է ծախվում կանաչին:

Եվ իր համար երգում է նա
Բողկի մասին, կաղամբի...
Զրնգում է երգը նրա,
Մարդիկ գոհ են՝ ո՞նց չերգի:

Պալերմոյի դռների մոտ,
Փողոցներում, բակերում,
Փափուկ, զուլալ ձայնը նրա
Ինչ անո՜ւշ է գեղգեղում:

Կանայք շտապ վազում գալիս
Իրենց շքեղ տներից,
Սոխ, բողկ առնում ու խնդրում են
Երգել նորից ու նորից:

Ջաննին արտիստ պիտի լիներ,
Գուցե երգիչ դառնար մեծ,
Բայց ծախում է սոխ ու պղպեղ,
Վաճառող է դարձել խեղճ:

Առավոտ վաղ Պալերմոյում
Երգիչներն են երբ քնած,
Ժիր Ջաննիի երգն է հնչում,
Երգը իր իսկ հորինած:

Թարգմ. Մ. ԹԱՐՅԱՆԻ

Նկ. ԱՆՈՒՇ ՏԵՐ-ՄԻՆԱՍՅԱՆԻ



# ԶՎԱՐԹ ՃԱՄՓՈՐԴՆԵՐ

ՂՈՒԿԱՍ ՍԻՐՈՒՆՅԱՆ

Դե նայի՛ր, դե նայի՛ր ուշադիր—
լեռների, դաշտերի վրայով
նրբորեն սահում է մի վրձին՝
ամեն ինչ վառ կանաչ ներկելով:
Վրձինը շարժվում է անտես
ու կանաչ ճամփաներ նկարում.
այս գարնան ջերմացած ճամփեքով
ի՞նչ զվարթ ճամփորդներ են քայլում:

— Այդ ծառերն ու խոտերն են անցնում,
առվակը, թիթեռը գույնզգույն,
նրանց հետ, տես, բարի կախարդն է
ուրախ երգ երգելով բարձրանում:

Դե լսի՛ր, դե լսի՛ր ուշադիր—
լեռներում, դաշտերում ամեն տեղ
հնչում է, կանչում է մի սրինգ՝
սփռելով վառ կանաչ նվագներ:
Սրինգը հնչում է միշտ անտես
ու կանաչ երազներ է հյուսում,
այդ կանաչ երազներն ի վեր
ի՞նչ զվարթ ճամփորդներ են քայլում:

— Այդ բողբոջն է բացվում արևին,
այդ առվակն ու թիթեռն են խաղում,
նրանց հետ, տես, կախարդը բարի
երգելով մեզ իր մոտ է կանչում:

ներ են կազմակերպում անվանի գիտնականների հետ, անցկացրել են աշակերտական շրջանային օլիմպիադաներ՝ ֆիզիկայից, քիմիայից, մաթեմատիկայից:

## ՍՏԵՂԾՎԵԼ Է ՊԻՈՆԵՐՆԵՐԻ ՈՒԺԵՐՈՎ

Շրջանում գործում են 35 աշակերտական-արտադրական բրիգադներ, որոնք անցյալ տարի հարյուր հազար ռուբլու աշխատանք կատարեցին: Մասնակցելով «Պիոներկառույց» երթուղուն, «ԲԱՄ-ին՝ պիոներական գընացքներ», «Միլիոն՝ հայրենիքին», «Համերաշխություն» օպերացիաներին, պիոներները 65 տոննա մետաղի ջարդոն, 30 տոննա թղթի թափոն և մոտ մեկուկես տոննա դեղաբույսեր են հանձնել:

Արտաշատցի պիոներները 1500 ռուբլու շիշ են հանձնել, որից ստացված գումարը փոխանցել են Հանոյում կառուցվող պիոներպալատի շինարարությանը: Պիոներիայի ծննդյան օրվա տարեդարձին աշակերտները շուրջ երկու հազար մրգատու և դեկորատիվ ծառեր են տնկել գյուղամիջյան ճամփաների երկայնքով:

## ՈՒԺԵՂՆԵՐ, ՀԱՄԱՐՁԱԿՆԵՐ, ՃԱՐՊԻԿՆԵՐ

Շրջանում ամենամասսայական մարզաձևերն են համարվում ըմբշամարտը, բռնցքամարտը, թեթև ատլետիկան և ֆուտբոլը: Արտաշատցի դպրոցականները հաղթել են շրջանա-

# ԱՎԵԼԻ ՀԱՃԱԽ ԼԻՆԵԼ ՄԻԱՍԻՆ

Ինձ վրա շատ խոր տպավորություն թողեց Գայանե Ալավերդյանի նամակը:

Մեկ տարի առաջ այդպիսի դեպք պատահեց նաև մեր դասարանում: Չեմ հիշում, թե ով առաջարկեց դասից փախչել: Մի քանի րոպե հետո դասարանում այլևս աշակերտ չկար: Դպրոցից դուրս ելնելով, մենք այլևս չգիտեինք ինչ պետք է անենք: Այդ ժամանակ աղջիկներից մեկը՝ Ռուզաննան ասաց.

— Գնանք մեր տուն:

Նրանց տանը ոչ ոք չկար: Վեց ժամ մնացինք այնտեղ: Ուրախ էինք, բայց բոլորս ներքուստ անհանգիստ էինք, թեև դասարան վերադառնալ չէինք ուզում: Ի՞նչն էր պատճառը: Գուցե այն, որ մենք դասերից դուրս քիչ էինք միասին լինում:

Հաջորդ օրը մեր ծնողներին դպրոց, իսկ ինձ (դասարանի կոմերիտական քարտուղարն եմ) և դասարանի ավագ Արմենին դիրեկտորի առանձնասենյակ հրավիրեցին:

Այդ դեպքից հետո դասարանը, չգիտես ինչու, աշխուժացավ, մենք ավելի մտերմացանք ու սիրեցինք իրար:

Այդ օրվանից մինչև այժմ ես չեմ հիշում մեկին, որ դասից փախչելու մտադրություն ունենա: Տխրում ենք հիշելով, որ մի քանի ամիս հետո պիտի հրաժեշտ տանք դպրոցին, իրարից բաժանվենք:

*ՄԱՐԳԱՐԻՏԱ ԱԼԵՔՍԱՆՅԱՆ*
*Սիսիանի № 3 դպր.,*
*10-րդ դաս.*

# ԷՔՍԿՈՒՐՍԻԱՆ՝ ԴԱՍԵՐԻՑ ՀԵՏՈ

Սիրելի՛ Գայանե, դուք վատ եք արել, որ փախել եք դասերից: Չէ՞ որ էքսկուրսիա կարող եք կազմակերպել նաև դասերից հետո, կիրակի օրերին: Բայց, հասկանալի է, լավ կլիներ, որ ձեզ հետ լինեին նաև մանկավարժ և ծանոթացնեին ձեզ բնության հետ, օգնեին գեղեցիկն ավելի խոր զգալ և հասկանալ:

Անկեղծ ասած, մենք նույնպես չենք կազմակերպում էքսկուրսիաներ: Ճիշտ է, տեսարժան վայրերը հեռու են՝ շրջանից դուրս: Բայց չէ՞ որ մենք ծանոթ չենք նույնիսկ մեր շրջապատին, մեզ շրջապատող բնությանը:

*ՍԻՐԱՄԱՐԳ ԱՆԴՐԵԱՍՅԱՆ*
*Շամշադինի շրջ.,*
*8-րդ դաս.*

## ԱՐՁԱԳԱՆՔՈՒՄ ԵՆ ՏՊԱԳՐՎԱԾԻՆ

«Կանգ առ և լսիր...»

# ՄԱՆԿՈՒՑ ՍԻՐԵԼ ԳԵՂԵՑԻԿԸ

Բնությունը սիրում են բոլորը, բնությունը չսիրել հնարավոր չէ: Բայց եթե մեզանից յուրաքանչյուրը բնությունը սիրելով վարվի այնպես, ինչպես վարվեց պատմվածքի փոքրիկ հերոսուհին, ապա կարճ ժամանակում կամայանա ողջ բնությունը:

Փոքրիկի արարքը գեղեցիկ չէ: Անհրաժեշտ է, որ նրա ծնողները, ընկերները և նրան շրջապատող բոլորբոլորը ամեն քայլափոխի նրան հիշեցնեն, որ գեղեցիկը բոլորինն է, պետք է վերցնես քո բաժինը, բայց՝ համեստորեն ու չափավոր:

*ԳԱՅԱՆԵ ԱԼԱՎԵՐԴՅԱՆ*
*Գորիսի № 1 դպր., 9-րդ դաս.*

# ԻՍԿ ՄԵ՞Ջ...

«Կանգ առ և լսիր» պատմվածքում ինձ դուր չեկավ նախ փոքրիկ աղջկա ագահությունը: Եթե յուրաքանչյուրս դաշտից քաղենք այդքան ծաղիկ, բնությունը կամայացնենք: Մեր դաշտում էլ աճում են բազմերանգ ծաղիկներ, բայց մենք երբեք շատ չենք քաղում, որ այդ գեղեցիկ տեսակները չանհետանան: Եթե այդ փոքրիկը գնա դպրոց, շատ բան կսովորի, այլևս այդպես չի վարվի: Վատ է, որ նա միաժամանակ այդքան նախանձոտ է, ինքը հրաժարվել է ծաղիկներից, բայց չի ուզում գոնե ուրիշի ձեռքն ընկնեն, ուրիշն ուրախանա դրանցով: Ավելի վատ բան, քան այս փոքրիկի արարքն է, դժվար է պատկերացնել:

*ՄԱՄԻԿՈՆ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ*
*Արագածի շրջ. գ. Նորաշեն, 5-րդ դաս.*

յին ու հանրապետական պատանեկան մրցումներում և մասնակցել համամիութենական մրցումների: Նրանցից շատերը սպորտի վարպետներ են, վարպետության թեկնածուներ և կարգային մարզիկներ:

Վերջին երեք տարիներին քառամարտի համամիութենական ավանդական մրցումներում լավագույն տասնյակում են տեղ գրավում Այգեզարդ գյուղի (տղաների) և Արտաշատ քաղաքի № 6 դպրոցի (աղջիկների) թիմերը:

Աշնանը անցկացվեց Օլիմպիադա—80-ին նվիրված մարզատոն, որին մասնակցում էին շրջանի բոլոր դպրոցների պատանի մարզիկները: Մարզական վառ հագուստներով, պաստառներով ու կոչերով նրանց խումբը անցավ բոլոր գյուղերով և սպորտը պրոպագանդող ելույթներ ունեցավ աշխատավորության համար:

# ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ՀՈԳԱՏԱՐՈՒԹՅՈՒՆ

«Աստղիկ» երթուղու և «Մանկիկ» օպերացիայի ուղղությամբ շրջանի դպրոցականները վերցրել են 22 մսուրմանկապարտեզների շեֆությունը: Պիոներական ջոկատները հաճախակի հյուր են լինում իրենց փոքրիկ բարեկամներին, նրանց համար զվարճալի խաղեր կազմակերպում, երգեր ու պարեր սովորեցնում, պարապում նախադպրոցական խմբերի երեխաների հետ, սովորեցնում տիկնիկներ պատրաստել: Իսկ քաղաքի № 1 դպրոցի պիոներները ամռան և աշնան ամիսներին աշխատելով իրենց շեֆ ձեռնարկությունում, ստացված գումարի զգալի մասը հատկացրել են իրենց փոքրիկ բարեկամներին խաղալիքներ գնելու և այլ կարիքներ հոգալու համար:



# ՕԼԻՄՊԻԱԿԱՆ ԽԱՂԵՐԻ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆԻՑ

## ԳԱՎԱԹ՝ ՊԱՐՏՎՈՂԻՆ

Պատմագիրների վկայությամբ, օլիմպիական խաղերի յուրաքանչյուր մարզաձևի մրցումների ավարտից հետո հատուկ մրցավար-հաղորդավարները (հերոլդներ) հայտարարում էին տվյալ մարզաձևի հաղթողի անունը, հայրանունը, ծննդավայրը, և քաղաքին կամ երկրին թույլատրվում էր կանգնեցնել հաղթողի արձանը: Օլիմպիական խաղերի չեմպիոնները մինչև կյանքի վերջը ստանում էին որոշակի նյութական օգնություն, իսկ եզրափակիչում պարտված մարզիկին հանձնում էին հատուկ գավաթ:

Գավաթները, որոնք այնքան պատվավոր են մեր օրերում, հազարամյակներ առաջ, պարզվում է, բոլորովին այլ իմաստ են արտահայտել: Սակայն, նույն Հին Հունաստանում էլ գավաթները ձեռք բերեցին հարգանք և պատիվ:

Մոտավորապես 37-րդ օլիմպիական խաղերից սկսած՝ հաղթողներին դափնե և ձիթենու պսակներ տալուց բացի, որոնք օլիմպիական խաղերի բարձրագույն պարգևներն էին, սկսեցին պարգևատրել նաև ձիթապտղի յուղով:

Պատանիների վազքի մրցումներում հաղթողը պարգև էր ստանում 50 սափոր ձիթապտղի յուղ, հնգամարտի հաղթողը՝ 40, իսկ ամենախոշոր մրցանակը ստանում էր մարտակառքերի օլիմպիական չեմպիոնը, որը տուն էր տանում 140 սափոր ձիթապտղի յուղ:

Սափորների վրա պատկերված էին լինում պահեր տվյալ մարզաձևերի մրցումներից և կրում էին «Պարգև Աթենքից» մակագրությունը:

Ահա հենց այս սափորներն էլ ժամանակակից գավաթների նախահայրերն են:

Պեղումների ժամանակ գտնվել են մարզական սափորներ, որոնց վրա, սակայն, չի եղել «Պարգև Աթենքից» մակագրությունը:

Պարզվում է, նման սափորներ պատրաստվում էին մարզասերների համար: Այլ քաղաքներից ու երկրներից Աթենք եկած հյուրերը դրանք տանում էին իբրև հիշատակ օլիմպիական խաղերից:

## ՀՐԱՇԱՄԱՆՈՒԿԸ

Հին ժամանակներում Հելլադայում ապրում էր Թեագենես անունով մի փոքրիկ տղա: Նա չորս տարեկանում նապաստակներից արագ էր վազում: Հինգում դույլերով ջուր էր բերում, յոթում՝ այծյամն ուսերին անցնում էր առվակն ու բարձրանում փոքրիկ բլուրը: Իսկ մի անգամ, երբ արդեն ինը տարեկան էր, ընկերների հետ խաղալիս նայում է քաղաքի հրապարակի կենտրոնում դրված բրոնզե արձանին և հենց այնպես հարցնում.

—Ուզո՞ւմ եք այս արձանը տանեմ մեր տուն:

Ընկերները սկսում են ծաղրել նրան: Թեագենեսը վիրավորվում է և որոշում անպայման կատարել խոստումը:

Երբ արևը մայր է մտնում և քաղաքացիները քնում են, Թեագենեսը գաղտնի դուրս է գալիս տնից և գնում հրապարակ: Թեան, ինչպես, նրան կանչում էին ընկերները, հանգիստ մոտենում է ցածր պատվանդանին դրված բրոնզե արձանին և գրկած տանում տուն:

Առավոտյան արձանի անհետացման լուրը տարածվում է քաղաքով մեկ: Բոլորը շտապում են հրապարակ: Քաղաքի մեծերը հրաման են արձակում անպայման փնտրել և գտնել գողին, իսկ Թեան, նայելով շփոթված մարդկանց դեմքերին, չարաճճիորեն ժպտում է և ուրախ վազվզում: Սակայն նկատելով քաղաքացիների լուրջ ու տագնապած դեմքերը, վախենում է ու զգում, որ շատ վատ բան է արել: Անմիջապես վազում է տուն ու ծնողներին խոստովանում իր մեղքը:

Թեայի մայրը վշտից ծնկներն է ծեծում, իսկ հայրը՝ աչքը հսկա արձանին, քայլում է բակի մի ծայրից մյուսը: Նա ուզում է հարձակվել Թեայի վրա ու մի լավ ծեծել, սակայն որդու ձեռքից բռնած տանում է հրապարակ և հուզված ծերակույտին խոր գլուխ տալով ասում.

— Քաղաքի սրբազան հայրեր, ահա՛ արձանի գողը:

Սրբազան հայրերը, նայելով թըրջված հավի պես կծկված Թեային, ծիծաղում են, իսկ քաղաքագլուխը հարցնում է.

— Դու այն երկո՞ւ ձեռքով տարար, թե՞ մեկ:

Թեան վախից թաքնվում է հոր թիկունքում, սակայն հայրը բռնում է նրա ձեռքից և զայրացած ասում.

— Արձանը տանելիս չէիր վախենում, չէ՞: Դե պատասխա՛ն տուր. երկո՞ւ ձեռքով տարար, թե՞ մեկ...

— Երկու...

— Իսկ ինչի՞դ էր հարկավոր արձանը,— հարցնում է քաղաքագլուխը:

— Ես... ես ցանկանում էի ընկերներիս ապացուցել, որ...— Թեան գլուխը կախում ու այլևս չի շարունակում: Այդ ժամանակ քաղաքագլխին է մոտենում տասնամյա Գլաուքոսը և ամեն ինչ պատմում:

Քաղաքագլուխը շփոթված նայում է իր օգնականներին: Օրենքների գրքում նման հանցանքի համար պատիժ չէր սահմանված: Եթե հանցագործը հասուն մարդ լիներ, ապա նրան գոնե կմեղադրեին գողության մեջ: Իսկ հիմա... Քաղաքի սրբազան հայրերը Թեային առաջարկում են ետ բերել արձանն ու կրկին կանգնեցնել պատվանդանի վրա:

Եվ Թեան, հարյուրավոր մարդկանց առաջ, երկու ձեռքով արձանն ամուր գրկած դուրս է գալիս բակից ու դանդաղ շարժվում դեպի հրապարակ:

Արձանի ծանրությունից նրա դեմքը կարմրատակում է, իսկ մաշկի տակ մկանները ձգվում են: Թվում է, թե փողոցով քայլում է փոքրիկ Հերկուլեսը: Նա, առանց հանգստանալու, հասնում է հրապարակ, մոտենում պատվանդանին, մկանները մի վերջին անգամ լարելով բարձրացնում է արձանը և դնում իր տեղը:

Մարդիկ հիացմունքից ծափահարում են, գոչում, ծաղիկներ են նետում մանուկ հսկայի ոտքերի տակ, իսկ քաղաքագլուխը մոտենալով, համբուրում է ճակատը, ապա զսպելով հիացմունքը, խստորեն պատվիրում Թեային և, ընդհանրապես բոլորին, որ այսուհետև ով համարձակվի նման հանցանք գործել, կպատժվի խստորեն...

Թեագենեսի առասպելական ուժի մասին լուրը տարածվում է քաղաքից քաղաք:

Չափահաս դառնալով, նա մասնակցում է բռնցքամարտի և թեթև ատլետիկայի մրցումների, հանդես գալիս օլիմպիական խաղերում և միայն ու միայն հաղթանակներ տանում:

*ՀՈՎՀԱՆՆԵՍ ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ*

ՓՈՔՐԻԿՆԵՐԻ ՀԱՄԱՐ

ՀԱՐՈՒԹՅՈՒՆ ՀՈՎՆԱԹԱՆ



Աշխատիր խոսքդ
Չլինի երկար…
— Իբրև մի ծաղիկ
Եկա խնդրելու…
— Բայց ինչո՞ւ փշով
Դեմս ելար դու…
— Այս փուշը որ կա,
Երկինքը վկա,
Մայրիկս է մեռած:
Երբ մեզնից գնաց,
Երբ որ մահացավ,
Մայրիկիս վրա
Հողը մայրացավ
Ու ծաղիկ ծնեց,
Լեռն այս ջուր տվեց,
Արեգակը՝ հուր…
Բայց դու խլեցիր
Թե՛ ջուր և թե՛ հուր,
Ծաղիկս ցավից
Փշի փոխարկվեց…
Կարեկից եղիր
Նրանց մորմոքին՝
Ետ տուր հուր ու ջուր
— Մի պուտ կխմեմ
Ես քո արյունից,
Հսկա չես, ափսոս,
Որ ուժս կշռեմ,—
Դևն այսպես ասաց



# ԱՐԵԳԱԿՆ ԷԼ ՓՇԵՐ ՈՒՆԻ...

*Նկ. ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆԻ*

Ծովից հեռու,
Սարի ետև,
Կար մի տղա՝
Աչք-ունքը սև,
Մազը գանգուր,
Սիրտը աղբյուր,
Հոգին շիտակ,
Կար մի տղա
Արևի տակ:
Գիտեր լեզուն
Ժայռ ու քարի,
Գիտեր հոսել
Առվակի պես,
Ժիր դայլայլել,
Թռչնակն ինչպես:
Սիրում էր նա
Շուշան, մեխակ,
Ծաղիկները
Ամեն տեսակ:
Սիրահար էր նաև վարդի,
Սիրում էր և փուշը վարդի:
Գիտեր, որ թե
Վարդն է լալիս,
Նրան արցունքը
Փուշն է տալիս:
Նաև գիտեր՝
Ամեն ցերեկ
Գիշեր ունի,
Արեգակն էլ
Փշեր ունի:
Փուշը ինքը
Տառապանքն է,
Վարդի ապրած
Դառը կյանքի:
Պատմեմ ես ձեզ,
Թե ինչ եղավ,
Ինչպես եղավ,
Որ այս տղան
Փշե զորքով
Հաղթեց դևին
Յոթ գլխանի,
Որ իշխում էր
Դարեր քանի,
Վերջին կաթիլ
Ջուրն էր խլում,
Ծառ ու ծաղկի...
Ծաղիկ ու խոտ
Կծկվում են
Իրարու մոտ,
Եվ իրարից
Ստվեր խնդրում,
Ջուր աղերսում:
Էլ քչքչան
Առուն չկար...
Տանելի է
Ծաղիկների
Ցավը էլի:
Զգալ գիտեն,
Սգալ գիտեն
Եվ փշերը
Անասելի:
Թե ծարավից
Խոտ ու ծաղիկ
Վերանում են,
Խեղճ փշերը
Մահից առաջ
Ծերանում են:
Տղան զգաց
Ցավը դաշտի.
— Ջուր կբերեմ
Ես ձեզ,— ասավ:

* * *

— Ո՞նց հանդգնեցիր,
Դեմս կանգնեցիր,
Ի՞նչ հնար գտար,
Սահմանս մտար:
Իմ ցանկապատով
Այդ ո՞նց ես անցել,
Որ չեմ զգացել:
Ո՞վ ես դու, ասա՛,
Ինչպիսի՞ սրտով
Այստեղ դու հասար:

Որ մի փուշ թռել,
Լեզվին է թառել:
Դևը զայրացած,
Մութ աչքը չռած,
Ժայռ ու ծառերին
Բախվեց անզգույշ,
Ու ժայռից մի փուշ
Ականջին կպավ,
Ու ծառից ընկավ
Աչքի մեջ մի փուշ:
Դևն ուզեց ծառը
Անել տեղահան,
Հազար-հազարով
Փշերը ելան,
Փուշ-փուշ խոցեցին:
Երբ դևը փորձեց
Շուռ տալ ժայռը մեծ,
Վերից ու վարից
Ջրեր հոսեցին...
Եվ դևը ոռնաց՝
Ներսից ու դրսից
Փշերով պատած:
Ոռնաց, ոռնոցով
Տապալվեց պարտված:
Ու գնաց տղան
Ու դաշտը հասավ,
Առաջվա նման
Ծաղիկներ տեսավ
Ու վարդեր փշոտ:
Երգ էին ասում
Ծաղիկներն անուշ,
Երգ էին ասում
Փշերը փուշ-փուշ...

# ԶՐՈՒՅՑՆԵՐ ԼԵԶՎԻ ՄԱՍԻՆ

*ԼԵՎՈՆ ՀԱԽՎԵՐԴՅԱՆ*
*բանասիրության դոկտոր*

## 24. «ԳՐԱՄԵՆՅԱԿԱՅԻՆ ԼԵԶՎԻ» ՈՒ ՆՐԱ ՎՆԱՍՆԵՐԻ ՄԱՍԻՆ

Չե՞ք զգացել, թե ինչքա՜ն տհաճ է ու անտանելի, երբ ստիպված ես լինում լսել որևէ մեկին, որ խոսում է տափակ ու անհամ, ասես արդուկած լեզվով: Եվ ինչքան էլ լավ բաներ ասի նա, ինչքան էլ քերականորեն ճիշտ, էլի՛ նրա խոսքը կլինի անհրապույր ու ձանձրալի: Այդպես լինում է այն պատճառով, որ նա արտահայտվում է ոչ թե իր խոսքերով, այլ գործի է դնում լեզվական շտամպներ, իսկ դրանք խոսքը դարձնում են անգույն ու անդեմ: Այդպիսի խոսք, դժբախտաբար, մենք լսում ենք (գուցե և ասում ենք) շատ հաճախ, ամբիոնից լինի թե առօրյա կենցաղում:

Ի՞նչը կարող է լինել ավելի տրամադրող, ավելի ուրախ, քան հարսանիքը, ծննդյան տոնը, քեֆի սեղանը: Բայց ի՞նչ կմնա ուրախությունից, եթե լսես այսպիսի բաժակաճառեր. «Խմելով այսինչի կենացը, ես ուզում եմ նշել նրա ընկերական զգացմունքները...» Իսկույն տաղտուկ է իջնում ամենքի վրա, մանավանդ, երբ ի պատասխան հնչում է նույնքան տափակ խոսք. «Ինչպես դուք խմեցիք իմ կենացը, այնպես էլ ես եմ խմում ձեր կենացը» և այլն, և այլն:

Սա հենց այն է, ինչ կոչվում է «լեզվական շտամպ»՝ արտահայտված առօրյա կենցաղում:

Լավ խոսքն այն է, որ անկեղծ ու տպավորիչ արտահայտում է մարդու մտքերն ու զգացմունքները: Մինչդեռ «լեզվական շտամպը» պատնեշի պես կանգնում է մարդու կենդանի ըզգացմունքների և դրանց դրսևորման միջև՝ թույլ չտալով, որ ապրված զգացմունքից գոնե մի քիչ թափանցի խոսքի մեջ: Ահա թե ինչու այդպիսի լեզվով ո՛չ սեր կարելի է արտահայտել, ո՛չ ատելություն, ո՛չ էլ առհասարակ որևէ զգացմունքով կարելի է համակել մեկ ուրիշին:

Չուկովսկին պատմել է մի այսպիսի դեպք. «Մի երիտասարդ, անցնելով այգու մոտով, տեսավ, որ հնգամյա մի աղջիկ ցանկապատի մոտ կանգնել ու լաց է լինում: Նա քնքշորեն կըռացավ և, ի զարմանս ինձ, հարցրեց.

— Դու ի՞նչ հարցի շուրջն ես լաց լինում:

Նա ասաց ամենաքնքուշ զգացմունքով, բայց իր քնքշանքն արտահայտելու համար մարդկային բառեր չգտավ»:

Հենց Չուկովսկին է կիրառության մեջ դրել «գրասենյակային լեզու» հասկացությունը, որը, ինչպես «դպրոցական ժարգոնը», նույնպես պետք է ընդունել պայմանաբար. չէ՞ որ այդ թորված, արդուկված, կաղապարված լեզուն գործի է դրվում ոչ միայն գրա-

սենյակներում, այլև ամենուրեք՝ ժողովներում, հանդեսներում, հավաքույթներում, թերթերում, դասաժամերին, նույնիսկ, ինչպես տեսանք, քեֆի սեղանի շուրջը. ամենուրե՛ք, ուր մարդիկ իրենց հուզմունքին համարժեք բառեր գտնելու փոխարեն դիմում են պատրաստի դարձվածքներ ասելու հեշտ միջոցին: Եվ սա մարդկանց ներաշխարհն աղքատացնում, բնավորությունը փչացնում է այնպես, ինչպես ժարգոնը: Չուկովսկու կարծիքով դա նույնիսկ ավելի վնասակար է: «Այդ հիվանդությունը,— գրել է նա,— հազար անգամ ավելի մեծ չարիք է, քան բոլոր տեսակի ժարգոնները, քանի որ դա կարող է մեր ժամանակակից խոսքը դարձնել, և դարձնում է, հյուծված ու թուլակազմ»:

Գրող Ն. Ատարովը պատմել է, թե ինչպես մեկնել է Լենինգրադ՝ ճակատային ընկերներին հանդիպելու ավանդական երեկույթին: Տեսել է դռան վրա գրված՝ «միջոցառում»: «Ես ապշած մնացի. այսպես որ գնա,— անցել է գրողի մտքով,— շուտով հարսանիքն ու մեռելահացն էլ միջոցառում կկոչեն»: Ահա թե ուր կարող է հասցնել շտամպված լեզուն:

Մի՞թե նույն մտածողության արդյունքը չեն շատ գործածվելուց մաշված ածականները՝ եթե դեր է խաղում, ապա անպայման մեծ դեր, եթե նշանակություն է, ապա անպայման կարևոր, եթե ոգևորություն է, ուրեմն՝ հսկայական, վերափոխվել է, ուրեմն՝ անճանաչելիորեն, վերելք է՝ չտեսնված պիտի լինի, տպավորություն է՝ պետք է լինի անջնջելի, եռանդ է՝ պիտի անսպառ լինի, եթե հաջողություններ են, ուրեմն՝ նորանոր և այսպես շարունակ:

Վատ է, երբ այսպես են խոսում չափահաս մարդիկ, է՛լ ավելի վատ է, երբ այսպես խոսում են պատանիներն ու աղջիկները, այսպես շաբլոն ածականներով, անգիր արված դարձվածքներով, հաճախ էլ՝ իրենց ձեռքը տրված տեքստերով: Եվ նման տեքստեր սարքողների մտքով չի էլ անցնում, թե ի՜նչ աննախանձելի դեր են խաղում դեռահաս մարդու կյանքում՝ զրկելով նրան սեփական մտքերը սեփական խոսքերով ասելու ընդունակությունից, վարժեցնելով նրան ուրիշի խոսքերը թութակի պես կրկնելու սովորությանը: Իսկ սովորույթը, ասենք մի անգամ ևս, մարդու երկրորդ բնավորությունն է: Այսպես մենք կրկին դեմ առանք «լեզու և բնավորություն» հարցադրմանը: Նախորդ զրույցում տեսանք, թե ինչպես բնավորություն է փչացնում արագ ու շփերթ ժարգոնը, այս անգամ՝ թե ինչպես նույն դերը կատարում է դրա հակառակ ծայրահեղությունը՝ թեև քերականորեն ճիշտ, բայց անհամ ու անհոգի «գրասենյակային լեզուն»:

Դրա տխուր վկայություններն են այն շարադրությունները, որ մեր շրջանավարտները գրում են բարձրագույն դպրոց ընդունվելիս: Դրանցից մի քանի նմուշ մեջ է բերել դասախոս Ռ. Իշխանյանը անցյալ տարի «Գարուն» ամսագրում հրապարակած հոդվածում: Ահա, օրինակ. «Բակունցի «Ալպիական մանուշակ» պատմվածքը ընդգրկումներով, սոցիալական խոր վերլուծությամբ սիրվում է ժողովրդի կողմից», «...մարդիկ տանջվում են հետամնացության ճիրաններում», «Այդ հիասքանչ բնության գրկում ապրում էին կյանքից հալածված, շարունակ կարիքի մեջ գտնվող գյուղացիները», «Թաթուլ իշխանը հայրենասեր է, նվիրված ժողովրդին ու հայրենիքին, որոնց համար նա իր կյանքը չի խնայում: Նա իր քաջերով կռվում է օտար զավթիչների դեմ: Թմկա տիրուհին

հայրենիքի դավաճան է, նա նենգորեն բացում է ամրոցի դռները օտար զավթիչների առաջ...» «Ռեակցիայի դաժան տարիներին Տերյանը գրեց որոշ տխուր բանաստեղծություններ, բայց շուտով նա հրաժարվեց դրանցից...» և ուրիշ այսպիսի «գոհարներ»: Ինքնուրույն մտածողության ոչ մի հետք, այստեղից-այնտեղից առնված պատրաստի դարձվածքներ, ածականների շտամպներ:

Ինչո՞ւ են մարդիկ այսպես գրում, այսպես խոսում: Հավանորեն այն պատճառով, որ այդպես ավելի հեշտ է: Ի՞նչ կարիք կա միտքն աշխատեցնել ինքնուրույն վերաբերմունք, դրա համեմատ էլ սեփական բառապաշար գտնելու համար, երբ կան պատրաստի բնորոշումներ, պատրաստի կաղապարներ՝ վերցրու և գործածիր ինչքա՛ն ուզում ես: Այսպես մտքի ծուլությունը պատճառ է դառնում, որ մարդ գերի դառնա ստանդարտ մտածողությանը, կորցնի սեփական դեմքը, մինչդեռ շատ հնարավոր է, որ իր ներաշխարհում նա ունի իր իսկ խոհերը, բայց ալարում է միտքը շարժել, կորցրել է այդ ընդունակությունը:

Ամեն ինչի հիմքը մարդու մեջ դրվում է փոքր հասակից: Եվ լեզուն, լեզվամտածողությունը, խոսվածքը բացառություն չեն կազմում: Ուրեմն, իմ կրտսեր բարեկամնե՛ր, դուք այժմվանից արդեն պետք է վերաբերմունք մշակեք կեղծ դարձվածքների, լեզվական շաբլոնի, տափակ ու անհամ, մի խոսքով՝ «գրասենյակային լեզվի» դեմ, իմանալով, որ դա կենդանի խոսքի ոխերիմ թշնամին է՝ ընդունակ փչացնելու մարդու ոչ միայն լեզուն, այլև բնավորությունը:

Դա կարևոր է ոչ պակաս, քան ժարգոնային գռեհիկ լեզվին ամբողջ ուժով հակադրվելը:

# ԲՈՒՅՍԵՐ, ՈՐՈՆՔ ՕՁԻՑ ԱՎԵԼԻ ԹՈՒՆԱՎՈՐ ԵՆ

Հնում, երբ մարդիկ դեռևս բավարար գիտելիքներ չունեին բույսերի մասին, տարածված էր այն սխալ կարծիքը, թե մի շարք բույսեր այնքան թունավոր են, որ դրանց մոտենալ չի կարելի:



Ընձախոտ

Շատ առասպելներ են հորինվել թունավոր ծառերի մասին: Պատմում էին, որ իբր կան այնպիսիները, որոնց շուրջը ոչ մի բույս չի աճում, հողը սև է, կարծես այրված լինի, որ երբ թռչունները կանգնում են այդ ծառի վրա, անմիջապես սատկում և ցած են ընկնում: Իբրև թե ծառը թունավոր գոլորշիներ է արձակում, որոնք սպանում են մարդկանց և բոլոր կենդանիներին, իսկ թռչունները խուսափում են անցնել այդ ծառի մոտով:

Իհարկե, թունավոր բույսեր շատ կան: Սակայն դրանք թունավոր են մեծ մասամբ այն դեպքում, երբ մարդը կամ կենդանիները ուտում են այդ բույսերի տերևները, ծաղիկները,

պտուղները կամ որևէ այլ օրգանը: Ճիշտ է՝ կան նաև ծառեր, որոնց ձեռք տալ անգամ չի կարելի: Եթե մարդու ձեռքի վրա մանր, թեկուզ անտեսանելի վերքեր ու ճեղքվածքներ կան, ապա թույնը կանցնի արյան մեջ և մարդը կթունավորվի:

Երևանի բուսաբանական այգում մի այդպիսի թուփ կա, որը կոչվում է ռուս տոքսիկոդենդրոն


Շաղեղ

(թույնի ծառ): Սա խիստ թունավոր բույս է և սրան ձեռք տալ անգամ չի կարելի: Երբ երեխաները անզգուշաբար ձեռք են տալիս դրա տերևներին կամ ցողուններին, ապա հեշտությամբ թունավորվում են: Թունավորվածի ձեռքը սարսափելի ուռչում է և անտանելի ցավեր են առաջանում:


Երկակի լոշտակ

Ամենաթունավոր ծառերը ստրիխնինի ցեղի ներկայացուցիչներն են: Դրանցից պատրաստված թույնը արևադարձային երկրների բնիկները քսում են իրենց նետերին: Թունավորված նետերով վիրավորված մարդը կարճ ժամանակից հետո մահանում է:

Հայաստանում էլ կան թունավոր բույսեր:

Մահամորմ



Դրանցից հայտնի են կղմուխը, մրտավարդը, գայլահատը, մահամորմը, որոշ սնկեր, ընձախոտը, ագռավաչքը, շընղեղը, գինազոխը, մոլեխինդր և այլն:


Գինազոխ

Պետք է ճանաչել և զգուշանալ թունավոր բույսերից:

ԼԵՎՈՆ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ
կենսաբանության դոկտոր, պրոֆեսոր

Գայլահատ



Ստորև տպագրվող խոսքը գրել է Կոմիտասը 1911 թ. հոկտեմբերին Ալեքսանդրիայում, Վահագն Չիթչյան անունով մի պատանու ալբոմում:



# ՍԻՐԵ ԲՆՈՒԹՅՈՒՆԸ

Սիրուն մանկիկ, կայտառ մանկիկ, օր մը դուն ալ պիտի մեծնաս ու մարդ դառնաս: Քեզի պզտիկ խրատիկ մը տամ:

Միտքդ մարզե ազնիվ գիտություններով և մաքուր գեղարվեստով: Իմաստունի ծովածավալ մտքեն որսա գիտություն և գեղարվեստի սրտեն բարի զգացումներ: Գրքերն ու ձայները մեռած հոգիներուն մտքի ու սրտի տապաններ են:

Դուն հետևե բնության դպրոցին, միտքդ բաց ու կարդա անոր ծով միտքը, որու մի կաթիլն է քո մեջ Արարչի շնորհած ձիրքը. սիրտդ բաց և թող արձագանքե հոն անոր խորհրդավոր ու գաղտնի ձայները, զի քո սիրտն ալ անոր անեզր ձորի մեկ ձորիկն է, որ շնորհել է քեզ երկինքը՝ հոն պաշարելու ազնիվ, ազնիվ զգացումներ:

Կարդա բնության գիրքը, որ կարելի չէ ոչ մեկ բանով գրել, որ մեկ ձայնով արձանագրել, ոչ մեկ գույնով նկարել և ոչ մեկ գործիքով դրոշմել... Բնության երևույթներն անհունապես հեղեղուկ են և շարժուն, այնտեղ կյանք կա, որ չէ կարելի անկենդան տառերով ու ձայներով, գիծերով ու բիծերով, վրձիններով ու չափերով դրոշմել, պարփակել. աննման է արշալույսին, միշտ թարմ, միշտ նոր, միշտ կենդանի, միշտ կենսատու, միշտ մայր-ծնող մտքի ու սրտի և ձեզի պես մանուկներու նման միշտ մանուկ ու պարզուկ:

Սիրուն մանկիկ, պայծառ մանկիկ, սիրե բնությունը...

**ԿՈՄԻՏԱՍ ՎԱՐԴԱՊԵՏ**

# Ճայերը

ՌՈՒԲԵՆ ՀՈՎՍԵՓՅԱՆ

Լճի լուսավոր կենտրոնում ծանր ու ծույլ պտտվում էր ձկնորսանավը՝ հաջող որսի լուրը, որպես ախորժալի ձկնահոտ հանձնելով գլոր-գլոր վազող կոհակներին, որոնք ափ էին հասցնում նաև տախտակամածին թպրտացող ձկների ճիչերը: Կապույտ ժայռի ստորոտում նստոտած ճայերը խենթանում էին: Չլիներ հավաքի հրամանը, երամը հիմա, ամեն օրվա պես, կմթնեցներ երկինքը, կկարկտահարեր լիճը, կկըտցահարեր հիմար այն ձկնիկներին, որոնք իրենց անխոհեմությունը միշտ էլ անզուսպ լուսասիրությամբ են արդարացնում: Բայց հրամանը կար և Կապույտ ժայռի տակ ըստ ավագության նստոտած ճայերը, սպասում էին Առաջնորդին: Նա կարող էր հայտնվել ամեն պահ՝ երկնքից ընկնող քարի, լճից դուրս թռչող ձկան պես, կարող էր պոկվել ճերմակ ամպափրփուրից, գոյանալ անգոյությունից՝ օդից կամ առայժմ լճի կենտրոնը միայն լուսավորող արեգակի շողերից: Նա հրաշք ճայ էր: Նա երամի հպարտությունն էր: Շատ առաջնորդներ էին տեսել ճայերը, բայց այս վերջինն էր կատարյալը, նա էր դարձել իրականացումը երամի դարավոր երազանքի՝ Առաջնորդն իր հավասարը պիտի չունենա, բայց երամը նրա առաջնորդությամբ պիտի կարողանա անել այն ամենը, ինչ ինքն է կարողանում անել: Նա հրաշք ճայ էր: Նրան նույնիսկ արծիվներն էին հարգում, նրանով հիանում էին ձկնորսները:

Վերջին շարքերում, սակայն, սկսվել էր անհանգստությունը: Քաղցից բացի, դժվար բացատրելի մի զգացում էր տանջում ճայերին:

— Որտե՞ղ է Առաջնորդը,— լսվեցին առաջին դժգոհ ձայները:— Օրը սկսվել է վաղուց, իսկ մենք ոնց որ թխսկան լինենք:

— Ի դեպ,— հիշեցին վերջին շարքերում,— մենք թխսկաններ ունենք: Եվ նրանց կերակրել է պետք:

Հուզումն ալիք-ալիք կուտակվելով, խռովության շունչ ձեռք բերելով՝ ի վերջո, հասավ ամենավերին շարքերին, որտեղ բազմել էին Ավագները:

Անհանգստությունը ծեր Ուսուցչի սիրտն էլ սողոսկեց, քաղցը չստիպի՞ հանկարծ թխսկաններին լքել բները: Ձվերը կսառչեն, կդադարի կամ, լավագույն դեպքում, կդանդաղի այս տարվա ճտերի աճը: Իսկ ցեղը հզոր է առողջ ճտերով և այն հավատով, թե

այդ ճոտերի մեջ է թևերն ամրացնելու ապագա Առաջնորդը:

— Նա ուր որ է կհայտնվի,— երամին հանգստացրեց ուսուցիչը:

— Ես այստե՛ղ եմ,— հանկարծ վերից լսվեց բոլորին ծանոթ, թանձր ձայնը:

Ծայերը բարձրացրին գլուխները, սպիտակ, ամռանը ձորի մութ անկյուններում թաքնված մի բուռ պսպղուն ձյան նման Առաջնորդը կանգնել էր Կապույտ ժայռի կատարին և նրա խաղաղ շնչառությունը հուշում էր երամին, որ վաղուց էր նա այնտեղ: Ամուր էր կանգնած, վստահ: Ծանկերը արմատ էին գցել ժայռի ձեղքերի մեջ: «Ահա՛ ես,— ասում էր նրա կեցվածքը:— Դուք ինձ սպասում էիք, այնինչ պիտի փնտրեիք»:

Երամը շփոթվեց: Ի՞նչ է ուզում ասել Առաջնորդն իր այս արարքով: Ինչո՞ւ էր լռում, եթե վաղուց էր եկել: Ո՞ւմ էր սպասում: Ինքն էր, չէ՞, արձակել հավաքի հրամանը, առանց, նույնիսկ, ինչպես կարգն է, նախապես խորհրդակցելու Ավագների հետ: Եվ վերջապես, ինչո՞ւ է ելել Կապույտ ժայռի կատարը, թափուր թողնելով ամենօրյա գահը՝ թամբանման քարը: Համատարած շփոթմունքի մեջ ոչ ոք չհասկացավ, թե ինչպես ծնվեց ոտնոտալով վեր բարձրանալու մղումը, ստորին շարքերը սեղմվելով հրեցին վերջիններին, սրանք էլ Ավագներին և քիչ անց, Առաջնորդի ոտքերի տակ երամը գրավել էր նոր դիրքեր, կազմել նոր շարքեր, վերջին շարքի ճայերը թառեցին թամբանման քարին:

— Այստեղ են կայացել մեր պապերի հավաքները,— երբ սնկվեցին բոլորը, խոսեց Առաջնորդը:— Եվ ոչ թե այնտեղ, ներքևում, ուր լճի հատակն է եղել: Օրը-օրին լիճը բացում է իր հատակը, ինչնում է անվերջ, իսկ մենք, ոչինչ չնկատելով, իջնում ենք նրա հետ: Լիճը մեռնի, կմեռնենք և մենք, եթե սպասենք ջրի վերջին կաթիլի ցրնդելուն, վերջին ձկան մահին:

«Նա նաև խելոք է,— հպարտացավ Ուսուցիչը—Եվ հեռատես: Լճի գամաքելը բոլորն էին տեսնում, բայց ոչ մեկի հոգում դեռ չէր գծագրվել վախճանի պատկերը»:

— Երկրի երեսին,— շարունակեց Առաջնորդը,— ջուրն ավելի շատ է, քան ցամաքը:— Մեզանից ոչ հեռու, մեկ-երկու օրվա թռիչք տարածության վրա ձկնառատ ծովեր կան, որոնք չեն ցամաքի, քանի դեռ կանգուն է երկիրը: Մենք հզոր երամ ենք, մենք արագ թռչել գիտենք, մենք առանց զոհերի կարող ենք հասնել աշխարհի ցանկացած ծայրը:

— Առաջնորդի՛ր մեզ,— միաձայն ճչացին ճայերը:—Տար մեզ այն ծովը, որը չի ցամաքի, քանի դեռ կանգուն է երկիրը:

Երամի ոգևորության մեջ խուճապ էլ կար, Առաջնորդի նկարագրած լճի հեռանկարը այնպես էր ցնցել ճայերին, որ նրանց թվում էր, թե այս վերջին առավոտն է և անխուսափելի ճակատագիրը սև ամպի կերպարանքով, ահա, իջնում է Կապույտ ժայռի գլխին: Նրանք մոռացել էին քաղցը: Նրանք այլևս չէին զգում ափին մոտեցող ձըկնորսանավի խենթացնող բույրը:

— Էլ ինչո՞ւ ենք ուշացնում,— ճչում էին ճայերը:—Ամեն ինչ որոշված է... Առաջնորդի՛ր մեզ, Մե՛ծ ճայ...

«Նրանք թխսկաններին էլ կարող են մոռանալ,— ցավով մտածեց Ուսուցիչը:— Արդեն ճաք տվող ձվերն էլ... ի՞նչ մեծ ուժ է սարսափը...»

Առաջնորդը փոքր-ինչ բարձրացավ գետնից և թևերը ծալելով կրկին կանգնեց ճիշտ նույն տեղում: Երամը համրացավ:

— Մենք կհեռանանք աշնանը, երբ պնդանան ճոտերի թևերը,— հայ-

տարարեց նա, համոզված, որ երամի կամքն է արտահայտում։

Ուսուցիչը ծափ-ծափ զարկեց թևերը, վեր բարձրացավ և բոլորի համար անսպասելի հայտնվեց Առաջնորդի կողքին։ Զլված հանդգնություն էր, սակայն Առաջնորդը երամին ցույց տվեց, թե իր կամքն էր դա։

— Պատի՛վ տվեք նրան,— կրկնեց Առաջնորդը։— Նրա շնորհիվ են աշնանը մեզ հետ թռչելու այս տարվա ձտերը։

Ուսուցչի հայացքը սխալ տեսնողի հայացք էր ու թեև ակնհայտ էր, որ այս անգամ ոչ ոք սխալ չէր թույլ տվել, բոլորն էլ անզոր էին ընդհիմանալ սովորության ուժին. խեղճացան, քարշ գցեցին գլուխները։

— Նա ձեզ ասաց, որ մենք հզոր երամ ենք,— խոսեց Ուսուցիչը,—արագ թռչել գիտենք և առանց զոհերի կարող ենք հասնել աշխարհի ցանկացած ծայրը։ Դա այդպես է։ Բայց նա չասաց, թե մենք կորուստ չենք ունենա։ Մենք կգտնենք ջուր, ձուկ, ընդարձակ երկինք, բայց կկորցնենք... հայրենիք։ Եվ էլի կմեռնենք։

Առաջնորդի կտուցի տակ կախված վիրավորանքի ժպիտը երամին հեգնանք թվաց, այս ի՞նչ է բարբաջում Ուսուցիչը։ Տարիքն առել, գնդել է երևի։ Ինչպե՞ս թե կգտնենք ջուր, ձուկ, ընդարձակ երկինք, բայց կկորցնենք հայրենիք։ Հայրենիքը մի՞թե մենք չենք... Չէ՛, դուք ձեր կյանքում լսե՞լ եք ավելի ծիծաղաշարժ միտք...

Երամը քրքջում էր, իսկ Առաջնորդը թոթվում էր ուսերը. «Ի՞նչ կարող եմ անել, ծերո՛ւկ։ Ինքդ քեզ անհարմար վիճակի մեջ գցեցիր։ Քաղցած է երամը։ Հավաքը փակել է պետք»։

— Սա՛ է հայրենիքը, սա՛,— ճչաց ուսուցիչը։— Եվ եթե ձեզ վիճակված է հեռանալ,— ապա գոնե լավ հիշեք այս մի կտոր արևոտ լճափը։

Հետո նա մի ակնթարթում վեր բարձրացավ, պտույտ գործեց Կապույտ ժայռի վրա, ձկնորսների գլխավերևում ու լուծվեց ճերմակ անպաքուլաների մեջ։



Եղեգնապատ կղզյակի երկնքում պտտվող ագռավների սև, խոշոր ըստվերները քսվում էին ճայերի թևերին՝ միայն թափկաններին լսելի չարագուշակ շրշյուն թողնելով խոտերի սվվոցի ու ափին զարկվող ջրի խշշոցի մեջ։ Կղզյակը դարձել էր օգնություն կանչող, հազարալեզվակ, վիթխարի մի զանգ։

Առաջնորդի սուր աչքը դեռ հեռվից նկատեց իր բնի մոտ ընկած, երկու կես եղած ձվի կճեպը։ «Ծո՛տս է դուրս եկել, ճո՜տս»,— հրճվեց Առաջնորդը և առանց պահ կորցնելու հարձակվեց ագռավների վրա, հետապնդնեց նրանց մինչև անտառ, կրկին ետ դարձավ, լիճը գցեց բնի տեղը մատնող ձվի կճեպը։ «Դե, թող հիմա ջուրը կտցահարեն»,— մտքում ծիծաղեց Առաջնորդը և մինչ գլուխը բույնը կըխոթեր, զննեց չորս բոլորը՝ արդյոք ուրիշ կճեպներ չե՞ն երևում գաղութում։ Ո՛չ, առաջին ու առայժմ միակ ճուտը իր բնում էր հայտնվել։ Եվ նա ներս մտավ տեսնելու երամի առաջնեկին։

Մայր ճայը փաթաթվել էր նորածնին, չորացնում էր նրա դողդողացող մարմինը և բոլորովին չէր երևում, թե նրան վախեցրել էին ագռավների ըստվերները։

— Դո՛ւ էլ փաթաթվիր, շո՛ւտ,— հրամայեց մայր ճայը։— Մրսում է պստլոն։ Օ՜յ, տես ո՞նց է մրսում։ Մեջս էլ տաքություն չմնաց։

Մայր ճայի համար եռ տալով թարմ ձկնիկներ, Առաջնորդը լայն բացեց թևերը, փաթաթվեց որդուն և այնպես ամուր սեղմեց գրկում, որ խեղճ թխսկանը սարսափեց:

— Կխեղդե՛ս, գի՛ժ, ի՞նչ ես անում:

Անպաշտպան, տկլոր այդ արարածից Առաջնորդը ծանոթ, բայց վաղուց մոռացված հոտ առավ. մանկության հոտն էր: Նրան թվաց, թե որդին չէ, ինքն է քիչ առաջ վերջին մի կոտրահարումով ճեղքել ձվի կճեպն ու շլացել լույսի շռայլությունից: Հիմա կկոցել է աչքերը, տաքություն է փնտրում, ապահովություն, իսկ կտուցը շարունակում է կոտրահարել, որովհետև լույսը նույնպիսի կճեպ է թվում, ինչպիսին խավարն էր:

— Հայրս ինձ այսպես գրկեց, երբ դուրս եկա ձվից,— հիշեց Առաջնորդը:— Չխեղդվեցի, չէ՞: Ընդհակառակը, հորս գրկում ես ինձ ավելի ապահով էի զգում, ավելի տաք: Ծովի ու ձկան հոտ էր գալիս նրանից: Մորիցս հավի հոտ էր գալիս:

— Թո՛ւխս նստիր, — փնթփնթաց մայր ճայը,—քեզանից էլ հավի հոտ կգա:— Նա սաստիկ քաղցած էր, չկըշտացավ Առաջնորդի բերած ձկներով, բայց և չէր համարձակվում նորածնին հոր խնամքին թողած թռչել լճափ, ուր ճայերը դեռ շարունակում էին ուշացած խրախճանքը:— Գոնե մի մեծ ձուկ բերեիր, տես ի՜նչ ճուտ եմ լույս աշխարհ հանել:

*Նկ. ՍԱՐՈ ԿԱԼԵՆՑԻ*



— Բկլի՛կ,— քնքշորեն ասաց Ա-ռաջնորդը, — քեզանից բկլիկ ճայ դժվար թե գտնվի ամբողջ երամում:

Հաճելի թմրության մեջ էր ընկել Առաջնորդը, տված ջերմության փոխարեն ճտի թացությունը ներծծող նրա մարմինը փափկել էր, փխրունացել, Առաջնորդ դառնալուց հետո առաջին անգամ նրա միտքը, զգացմունքները զբաղված էին ոչ թե Երամով, այլ մեկ, ընդամենը մեկ ճայով: Նա չգիտեր էլ, որ անհաշիվ մարտերի մեջ կոփված իր մարմինը չէր կորցրել փափկելու ունակությունը: Եվ այս ներքին, անըմբռնելի փոփոխությունը նա ընդունեց որպես ամենամեծ երջանկություն: Նրան մի ակնթարթում հասկանալի դարձան կարծես թե մոռացված այն խոսքերը, որ ասել էր մայրը որդու ապագան կանխագուշակած հորը. «Հրաշալի կազմվածք ունի,— ասել էր հայրը:— Առաջնորդ կդառնա»: «Աստված չանի,—պատասխանել էր մայրը:— Աշխարհի ամենադժբախտ արարածները առաջնորդներն են»:

Առաջնորդը փոքր-ինչ բացեց գիրկը և տեսավ, որ չորացած աղվամազը որդու վրա բուսել-ցցվել է գարնան ծիլերի պես՝ նկատելի ընդգծելով փոքրիկի այն հոդերն ու խաղերը, որոնց վրա, հետո, թևեր էին աճելու: Հոր նըրման ճերմակ էր նորածինը, բացուխուփ աչքերում ապրելու այնպիսի տենչ էր ցոլցլում, որ թվում էր, թե նա աշխարհ է եկել հասունացման ժամանակային բոլոր սահմանները խախտելու առաքելությամբ:

— Ավելի լավ, ճո՛ւտս, ավելի լավ,— շշնջաց Առաջնորդը:— Դու շուտ պիտի մեծանաս, արագ, որովհետև երկար ճանապարհ ես կտրելու:

Նա մայր ճային չհայտնե․․․, որ հոր նման ինքն էլ ունի որդուն ․․․աջնորդ տեսնելու նախազգացում:



Երամի կյանքն աշխուժացել էր: Մեկը մյուսի ետևից ճաքճքել էին բոլոր ձվերը, կղզյակը լցվել էր անհամար ճտերով: Ճիշտ է, նրանք դեռ չէին թռչում, անվստահ առաջին քայլերն էին գցում եղեգնուտում, բայց երամը ստվարացել էր, հայր ճայերի հետ հիմա երկինք էին բարձրանում նաև թըռիչքին կարոտած թխսկանները: Սկըզբում միամտորեն, հետո արդեն դիտավորյալ, չարաճճի ճտերը երեկոյան շփոթում էին բները և մինչև ուշ գիշեր ձաղութում չէր դադարում նրանց զըվարճացող, ծնողների բարկացկոտ ծըղըրտոցները: Գրգռիչ այս աղմուկը գայթակղում էր գիշերով դիմացի լճափը ջուր խմելու եկած դաշտի աղվեսներին և անտառում անքնությունից տառապող սև-սև ագռավներին: Աղվեսները չէին համարձակվում ջուրը մտնել, իսկ ագռավները ցերեկվա անհաջողությունը մոռացած, անհամբերությամբ սպասում էին լուսաբացին: Երբեմն նրանց հաջողվում էր ճուտ թռցնել, մեկնումեկը թաքնվում էր ամպի ետևում և երբ ճայերի երամը կամ պահակները հետապնդում էին փախչող ագռավներին, սա իսկույն ցած էր նետվում, ճանկում առաջին պատահած ճտին: Մի օր կատաղի մարտ բըռնկվեց, Առաջնորդը փոքրիկ մի խըմբով հարձակվեց ագռավների վրա, մընացածներին հրահանգելով երկար շըղթա կազմած փակել փախուստի ճանապարհները: Սովորության համաձայն, ագռավները առանց մարտն ընդունելու փորձեցին փախչել անտառ, բայց շըրջապատման մեջ ընկան : Ստիպված էին ընդունել մարտը: Քանի դեռ վերևից ճիչ ու ծղրտոցներ էին լսվում, քանի դեռ օդում ճախրելով ցած էին ընկնում սև-սպիտակ փետուրներ, ճու-

տիկները հրճվում էին, փետուրների չափս ու ձևով, գույնով որոշում՝ ճայ է փետրահան լինում, թե՞ ագռավ, բայց երբ անշնչացած մարմինները ընկան ջուրը ու թրմփացին կղզյակի քարերի վրա, նրանք կծկվեցին, վախից իրենց քները փախան: Դա կենաց-մահու կռիվ էր: Երամը մեկընդմիշտ վճռել էր վերացնել ագռավների վտանգը: Շատ ճայեր կոտորվեցին, բայց և ոչ մի ագռավ անտառ չվերադարձավ:

Երեկոյան կղզյակի լճափում, թևից վիրավորված Առաջնորդը հավաքեց երամը, որ տոնի հաղթանակը, սակայն նոսրացած շարքերը, վիրավոր, գզգըզված ճայերի տեսքը նրան համակեցին անհուն տխրությամբ: Մեծ, հզոր երամ ունենալու երազով ապրող Առաջնորդին ամենից շատ տառապանք էր պատճառում անխուսափելի թվացող այն ճակատագիրը, որի հարվածների տակ ամեն տարվա ճտերը, փաստորեն ոչ թե ավելացնում, այլ լրացնում էին շարքերը: «Հեռանալ, անպայման պետք է հեռանալ ագռավների այս ցեղից, ճահճացող այս լճից, ընդարձակվող այս կղզյակից, որի ափերը շուտով կմիանան ցամաքին: Եթե մենք չէ, մեր ճտերը չէ, ապա մեր ճտերի ճտերը նոր տեղում կունենան հայրենիք...»

Երամին շնորհակալություն հայտնելով անձնուրաց կռվի համար, Առաջնորդն ազատ արձակեց բոլորին, իսկ ինքը լճափ գնաց՝ լվանալու թևի վերքը: «Աշխարհի ամենադժբախտ արարածները Առաջնորդներն են»,—կրկին հիշեց մոր խոսքերը, երբ ետևից ականջին հասան ընկածների համար ծայր առած ողբի ծղրտոցները: Նա ինքն էլ էր ուզում լալ, ողբալ, բայց իրավունք չուներ. Առաջնորդ էր:

Լճափին, դեռևս տաք ավազների վրա վազվզող ճուտիկների մեջ Առաջնորդը հայացքով փնտրեց-գտավ հասակակիցներից մի գլխով բարձր իր ճուտին, որի վազքը ուր որ էր վերածվելու էր թռիչքի, որի փափլիկ աղվամազի վրա շերտ-շերտ դարսվել էին շլացուցիչ ճերմակությամբ փոքրիկ փետուրներ:

Առաջնորդը մոտ կանչեց ամենափոքրին քայլել սովորեցնող Ուսուցչին, և մինչ նա կգար, տնքացող թևը ջուրը մտցրեց: Նա ինքն էր թևը դեմ արել իր վրա հարձակված երկու ագռավներից մեկի կտուցին, որպեսզի չեզոքացնելով նրան, հնարավորություն ունենար զարկելու մյուսի աչքին:

— Իմ ճտի թռչելու ժամանակն է,— վայնասունով ցած ընկնող ագռավին հիշելով,— ասաց Առաջնորդը Ուսուցչին:

— Դեռ վաղ է,— շատ զուսպ պատասխանեց Ուսուցիչը:

Կապույտ ժայռի տակ կայացած հավաքից հետո նրանք չէին հանդիպել, չէին բացատրվել:

— Նա ամբողջովին փետրակալել է:

—Նրա ուղեղը դեռ ջուր է: Նա չի տարբերում աջն ու ձախը:

— Նա կանի այն, ինչ ես եմ անում: Դրա համար ուղեղ պետք չէ, աչք ու թևեր են պետք:

Կապույտ ժայռի տակ կայացած հավաքից հետո էր ծեր Ուսուցիչը գիտակցել սխալը սրբություն դարձած այն սկզբունքի, որով նա տարիներ շարունակ ճայեր էր դաստիարակում: Ճտերի խմբից նա առանձնացնում էր առաջնորդացուին, նրան, միայն նրան տալով իմացությունների, հմտությունների իր ողջ պաշարը: Նա դառնում էր օրինակ: Մյուսները պետք է նմանվեին նրան: Նմանվել, նշանակում է հպատակվել: Հպատակվել, նշանակում է ապավինել: Հենց մանկուց ճտերը վարժվում էին հպատակության: Եթե

առաջնորդացում չէր էլ դառնում առաջնորդ, ապա մնացածները գոնե սովորում էին ենթարկվել:

— Քո ինչի՞ն էր պետք կռիվը ագռավների հետ,— հարցրեց Ուսուցիչը:

— Մի՞թե պարզ չէ,— Ուսուցչի զգուշորեն լարած թակարդը չնկատելով ասաց Առաջնորդը:— Նրանք քանդում են մեր բները, ուտում մեր ճտերին...

— Թող քանդեն,— ասաց Ուսուցիչը,— թող ուտեն... նոր բներ կշինենք, նոր ճտեր կունենանք... Չէ՞ որ կարելի էր չկռվել, կարելի էր փախչել...

— Ճտերին թողա՞ծ,— մտքից սարսափեց Առաջնորդը:

— Փախչողը միշտ էլ մի բան թողնում է:

Առաջնորդը խռովեց, նա չէր ուզում խոսել Ուսուցչի հետ, որն այսպես դաժանորեն, ասես ճուտ էր դիմացը, առակաբանությամբ էր զբաղվում:

«Հեշտ է գեղեցիկ խոսելը, երբ ուսերիդ պատասխանատվության փոշի էլ չկա,—դառնացած մտածեց Առաջնորդը:— Հեշտ է վճռի մեջ սխալ տեսնելը, դժվարը վճիռ կայացնելն է: Իսկ վճիռը կայացվել է»:

— Երամին սպառնացող վտանգը սև ագռավների կռինչը չէ,— մի կերպ բարկությունը զսպելով ասաց Առաջնորդը:— Լիճն է ցամաքում: Ի՞նչ կարող ենք անել:

— Չգիտեմ,— պատասխանեց Ուսուցիչը:— Եվ ոչ ոք չի իմանա, քանի դեռ փրկություն է թվում փախչելու գաղափարը: Վերացրո՛ւ այդ գաղափարը, կծնվի և հարցիդ պատասխանը:

— Երամի կամքը իմ կամքն է,— պայթեց Առաջնորդը,— իմ կամքը երամինն է: Եվ երամը վճռել է հեռանալ, իսկ իմ ճտով ինքս կզբաղվեմ...

(Վերջը՝ հաջորդ համարում)

## 1979 • ՄԵՐ ՄՐՑԱՆԱԿԻՐՆԵՐԸ • 1979

«Պիոներ» ամսագրի խմբագրական կոլեգիան 1979 թ. մրցանակները շնորհեց երիտասարդներին:



Նկարչական ձևավորման մրցանակին արժանացավ ԱՆՈՒՇ ՏԵՐ-ՄԻՆԱՍՅԱՆԸ «Թիկկի շան պատմությունը» վիպակի նկարազարդումների համար:



«Մորեղբայրս» պատմվածքի համար գրական մրցանակին արժանացավ ՀՈՎԻԿ ՎԱՐԴՈՒՄՅԱՆԸ:




«Լուսաբեր»-ից • «Լուսաբեր»-ից

# ՃՆՃՂՈՒԿՆԵՐ

Կոտ ու կես կորեկ ունեմ ցանելու համար,
Ճնճղուկներ թռան եկան ուտելու համար,
Կոացա քար վեր առա զարկելու համար:
Ղասաբներ դանակ բերին մորթելու համար,
Աղջիկներ թև քաշեցին փետրելու համար,
Պառավներ պղինձ դրին եփելու համար:
Դուռ-դրկից շուրջ բազմեցին ուտելու համար,
Տերտերներ խաչով եկան օրհնելու համար.
Աշուղներ սազով եկան գովելու համար:
Ա՜յ ճնճղուկիկ,
Կարմիր տոտիկ,
Սիպտակ փորիկ,
Ուտեն կուտիկ,
Խմեն ջրիկ
Առվի եզրիկ,
Պստիկ-մստիկ,
Փախչեն երթան ման գալու համար:

# ԴԺՎԱՐ ՀԱՆԵԼՈՒԿ

Պուղին թաշկինակով տասը ձու էր տանում տուն: Ճամփին պատահեց իր ծանոթին ու ասավ.

— Թե իմանաս՝ թաշկինակումս ինչ կա, սրա ձվածեղից քեզ էլ կուտացնեմ:

— Ջու,— պատասխանեց ծանոթը:

— Վա՛հ, — զարմացավ խելոքը,— էդ ո՞նց իմացար: Դե է՛ն էլ ասա՝ քանի՞ հատ է: Թե էդ էլ իմացար, բոլոր տասն էլ քեզ կտամ:

— Տասը:

— Ա՜ռ, ախպե՛ր, էդ էլ իմացար,— ասավ Պուղին ու թաշկինակով ձուն տվավ ծանոթին:

# Ծտի գուլպաները

Ձմեռ էր: Ծիտը կծկված նստել էր մերկ ծառին: Մրսում էին նրա բարակ տոտիկները:

— Ծի՜վ-ծի՜վ, գարունը որ գա, ինձ համար գուլպա պիտի գործեմ,— ասում էր նա մոտը նստած կաչաղակին:

Գարունը եկավ: Ծիտը, ծի՜վ-ծի՜վ, թռչկոտում էր կանաչ տերևների մեջ:

— Բա ինչո՞ւ գուլպաներ չես գործում,—հարցրեց կաչաղակը:

— Ի՜հ,— պատասխանեց ծիտը,— ե՞ս ով, գուլպա՞ն ով:



# ՀԵՔԻԱԹԻ ԱՂՋԻԿԸ

ՄԻՔԱՅԵԼ ՀՈՎՍԵՓՅԱՆ

Աղջիկն ապրում է ամպերից վերև,
Աղջիկն ապրում է աստղերից վերև:
Աղջիկը ունի արևշող ձեռքեր,
Աղջիկը ունի վրձիններ, ներկեր:

Նա մի քանի գույն իրար է խառնում
Ու նկարում է ամպ, թռչուն, ծաղիկ,
Մանուշակներից կապույտ է առնում
Ու նկարում է երկինք, ծով, շաղիկ:

Յորենի հասկից կանաչ է առնում,
Նկարում է դաշտ, անտառներ քանի...
Կանաչ կարկաչով բարալիկ առու
Ու կանաչ գարուն ու կանաչ քամի:

Եվ նկարում է ոսկի արտ, արոտ,
Առավոտի մեջ՝ թռչունի թևեր,—
Փոշոտ ճամփաներ, նախիրներ ու հոտ,
Մաղկած թիթեռներ ու թռչող սերմեր...

Բայց մի պակաս բան կա իր նկարում.
Կարմիրը քսում փափլիկ այտերին...
Ինքն էլ նկարի աղջիկ է դառնում:

# ԼՈՒՍԱԲԱՑԻ ՇՇՈՒԿՆԵՐԸ

ԱՐԱՄ ՀԱԿՈԲՅԱՆ

Աննկատ են, աննգայուն,
Շշուկները լուսաբացի,
Չես էլ զգում շուրջդ ոչինչ,
Մի կաթնաթոր լույսից բացի...
Բայց դու մի տես, ծիրաններու
Անծայրածիր հեռաստանում
Տերևները՝ պտուղներին
Ինչ-որ բաներ են խոստանում:
Իսկ հասկերին ոսկեծփուն
Քամին ինչ-որ բան շշնջաց,
Մղրիդների ծղրտոցից
Խոսքը քամու կիսատ մնաց:
Աղբյուրները սարալանջի
Միանալով առվակներին՝
Ինչ-որ բաներ շշնջացին
Ծաղիկներին ու թփերին:
Ինչ-որ բաներ մրմնջացին
Իրենց սառը, մաքուր կյանքից,
Աննետացան խոտերի մեջ
Թաքնվելով արեգակից:
Իսկ ծիտիկը կանգնել լարին,
Երկարաձիգ ու բարալիկ,
Ունկնդրում է շշուկները
Բույրերի մեջ ալիք-ալիք...

Նկ. ՄԱՐԻ ԿԱՌԱՆՅԻ






Ճարտարապետներ
ԱՐԹՈՒՐ ԹԱՐԽԱՆՅԱՆ,
ՍԱՇՈՒՐ ՔԱԼԱՇՅԱՆ



Հայ ժողովուրդը 1965 թվականին պատրաստվում էր նշելու ցեղասպանության զոհերի հիսնամյակը: Հայաստանի կառավարությունը որոշում ընդունեց այդ զոհերին նվիրված հուշակոթող կանգնեցնել:

Հայտարարվեց մրցույթ, որին ներկայացվեցին ավելի քան հարյուր նախագիծ: Մրցույթի հանձնաժողովը առաջնությունը տվեց ճարտարապետ Արթուր Թարխանյանի և տողերիս հեղինակի համատեղ կատարած նախագծին, որը և իրականացվեց 1965—67 թթ. ընթացքում Երևանի «Ծիծեռնակաբերդ» քաղաքային այգում:

Հուշարձանն իրենից ներկայացնում է աշխարհի կողմերի նկատմամբ ճիշտ կողմնորոշված սիմվոլիկ տապանաքար, որի կենտրոնում տեղավորված է խաչքարեր հիշեցնող մեծադիր 12 մույթերից կազմված կոնաձև դամբարանը: Դամբարանի խորքում Կոմիտասյան սգո երաժշտության մեղեդիների հետ շաղախվելով այրվում է հավերժական կրակը:

Դրսում, տապանաքարի աջ անկյունում, գիրկընդխառն վեր է խոյանում բուրգաձև հուշասյուն՝ իբրև հայ ժողովրդի վերածննդի և գոյատևման խորհրդանիշ:

Հուշարձանի յուրաքանչյուր տարրը մշակված է հնարավորին չափ զուսպ, երկրաչափորեն հստակ միջոցներով, ընդգծելու համար կյանքի և արհավիրքի անհամատեղելիության գաղափարը:

Հուշարձանի կառուցումը դիտվեց համաժողովրդական նվիրական գործ: Մայրաքաղաքի և հանրապետության այլ բնակավայրերի աշխատավորական ու ուսանողական կոլեկտիվները սիրով գալիս և շաբաթօրյակի կարգով օգնում էին շինարարներին: Մայրաքաղաքի կուսակցական ու պետական ղեկավարները մշտական հոգատարություն էին ցուցաբերում շինարարության ընթացքին:

Հուշարձանի հանդիսավոր բացումը տեղի ունեցավ 1967 թ. նոյեմբերի 29-ին:

*ՍԱՇՈՒՐ ՔԱԼԱՇՅԱՆ*
*Լենինական քաղաքի գլխավոր ճարտարապետ*

# 4. ԱՍՏՂԵՐԻ ԱՂՈՏ ԼՈՒՅՍԸ

Տիեզերքում աստղերն «ամենահիմնական» բնակիչներն են, նրանցով է պայմանավորված դիտվող երևույթների, ընթացող ֆիզիկական պրոցեսների մեծ մասը: Եվ հետևապես չափազանց կարևոր նշանակություն ունի հատկապես աստղերի, նրանց ճառագայթման ու նրանցում կատարվող երևույթների մանրամասն ուսումնասիրությունը, որը և թույլ կտա հասկանալ, թե ինչպես է ընթանում երկնային ամենատարբեր մարմինների զարգացումը նրանց կյանքի տարբեր փուլերում:

Երկնքին նայելիս, աստղերի աշխարհում առաջին բանը, որ անմիջապես աչքի է զարնում, դա ամենատարբեր պայծառության լուսատուների գոյությունն է: Դժվար չէ նկատել նաև, որ առավել պայծառ աստղերի թիվը համեմատաբար փոքր է, իսկ թույլերի թիվը գնալով բավական արագ աճում է:

Ուրեմն աստղերը նախ և առաջ տարբերվում են իրենց պայծառությամբ: Այդ տարբերությունը, թերևս աստղերի առաջին հատկություններից է, որի վրա ուշադրություն են դարձրել մարդիկ: Մեր թվարկությունից առաջ, դեռ երկրորդ դարում, հույն աստղագետ Հիպարքոսը ելնելով դրանից՝ կատարել է անզեն աչքով տեսանելի աստղերի առաջին դասակարգումը: Ամենապայծառ աստղերը նա համարում էր առաջին մեծության, իսկ աչքով հազիվ տեսանելի ամենաթույլերը՝ վեցերորդ մեծության: Ըստ այդպիսի բաժանման յուրաքանչյուր հաջորդ մեծության աստղ նախորդից թույլ է մոտավորապես 2,5 անգամ: Պարզ թվաբանության օգնությամբ կարելի է նաև հեշտությամբ համոզվել, որ այդ դեպքում վեցերորդ մեծության աստղերն առաջին մեծության աստղերից թույլ են մոտ 250 անգամ:

Սակայն, չէ՞ որ տեսանելի պայծառությունը խիստ կախված է լուսատուի հեռավորությունից:

Ծյուրիմացություններից խուսափելու համար հարկավոր է չափանիշ ընտրել՝ անկախ հեռավորությունից: Իմանալով աստղերի հեռավորությունը, կարելի է հաշվել, թե ինչպիսի պայծառություն կունենային նրանք, եթե բոլորը բերվեին նույն հեռավորության: Այդպես է առաջացել բացարձակ աստղային մեծության գաղափարը, առանց որի հիմա դժվար է պատկերացնել աստղագիտությունը: Վերջինս ցույց է տալիս լուսատուի պայծառությունը, եթե այն դիտվում է տասը պարսեկ հեռավորությունից, և միանական է ինչպես ամենամոտ աստղերի, այնպես էլ ամենահեռավոր գալակտիկաների համար:

Որպեսզի պարզ լինի աստղային մեծությունների մասին ասվածը, բերենք այսպիսի մի օրինակ: Մեզ ամենամոտ աստղը՝ Արեգակը քառասուն միլիարդ անգամ ավելի շատ լույս է տալիս մեզ, քան ամենապայծառ աստղերը: Բայց չի կարելի ասել, թե Արեգակն ընդհանրապես մյուս աստղերի համեմատությամբ այդքան շատ լույս է տալիս, պարզապես այն շատ մոտ է մեզ: Իսկ եթե նրա բացարձակ մեծությունը որոշելու նպատակով մենք փորձեինք նրան նայել 10 պարսեկ հեռավորությունից, ապա արեգակը մեզ կըթվար մի աղոտ, շատ աղոտ ու ոչնչով աչքի չընկնող աստղ, որի աստղային մեծությունը 4,9 է և մոտենում է մեր տեսողական հնարավորությունների սահմանին: Մինչդեռ գոյություն ունեն նրանից հազարավոր և տասնյակ հազարավոր անգամ հզոր աստղեր...

Աստղերի համար կարևոր հատկանիշ է նաև նրանց գույնը: Կան կար-

## Հիշողություն

ԳԵՎՈՐԳ ԽԱՉԱՏՐՈՒՐ

Հիշեցի հանկարծ,
Որ ամեն տարի մեր տան կտուրին,
Բարության բեռից
Գլուխները կախ,
Անում էին բյուր ցորենի հասկեր:

Հիշեցի,
Եվ իմ հիշողության մեջ
Հասկերի նման
Հառնեցին մեկեն
Մորս ձեռքերը...

միր, կապտավուն, սպիտակ և դեղին աստղեր, նրանք աչքի են ընկնում նաև այդ գույների տարբեր երանգների բազմազանությամբ:

Որքան ավելի ջերմ է աստղը, այնքան ավելի մոտ է նրա ճառագայթումը կապտասպիտակավունին: Երկնագույն աստղերի ջերմաստիճանն, օրինակ, հասնում է 30000°-ի և նույնիսկ ավելի, սպիտակներինը մոտավորապես 10000° է, դեղիններինը՝ 6000°, իսկ կարմիր աստղերի ջերմաստիճանը չի անցնում 2500—3000 աստիճանից: Դրանցից ավելի սառը աստղերն ընդհանրապես, առանց հատուկ սարքերի տեսնել հնարավոր չէ, որովհետև նրանց ճառագայթումը հիմնականում բաղկացած է ինֆրակարմիր ալիքներից, որոնք, ինչպես հայտնի է, պարզապես չի ընկալում մարդկային աչքը:

Այսպիսով, դիտումից պարզելով տվյալ աստղի գույնը, մենք, նույնիսկ առանց մանրամասն հետազոտությունների, կարող ենք բավականաչափ լավ գնահատել նրա ջերմաստիճանը՝ աստղի կարևորագույն բնութագրիչներից մեկը: Արեգակն, օրինակ, պատկանում է դեղին աստղերի ընտանիքին, և հետևապես, նրա մակերևույթին ջերմաստիճանը հասնում է վեց հազար աստիճանի:

Այն հսկայական ջերմաստիճանների դեպքում, որ ունեն աստղերը, իհարկե, սովորական վիճակում գտնվող նյութի գոյության մասին խոսք անգամ լինել չի կարող: Այդպիսի ջերմության պայմաններում ցանկացած նյութ ոչ միայն հալվում, այլ նաև գոլորշիանում է, անցնում գազային վիճակի: Ավելին, քայքայվում են նաև նյութի մոլեկուլները և ատոմները, որից հետո նյութը կորցնում է իր բնորոշ հատկությունները:

Աստղային պայմաններում մենք հանդիպում ենք նյութի գոյության չորրորդ՝ պլազմային վիճակին, երբ այն բաղկացած է հսկայական էներգիայով օժտված էլեկտրոններից ու դրական լիցքավորված իոններից: Պլազմայում տեղի ունեցող անսանձ պրոցեսների հետևանքն է աստղի ողջ ճառագայթումը: Դրա արդյունքն է նաև այն աղոտ լույսը, որ աստղերից հասնում է Երկիր և պատմում նրանց գաղտնիքների մասին...




Մեր առօրյա կյանքում կիրառվող երկարության միավորները պիտանի չեն աստղագիտական հեռավորությունների չափման համար: Դրանք չափազանց փոքր են, և չափումներ կատարելիս անհրաժեշտ է լինում գործ ունենալ տասնյակ զրոներով գրված թվերի հետ, որն ամենևին հարմար չէ: Այդ իսկ պատճառով աստղագետները օգտվում են աստղագիտական միավոր (ա. մ.), լուսատարի և պարսեկ հասկացություններից:

Դրանցից առաջինը սովորաբար գործածվում է մոտակա Տիեզերքի՝ Արեգակի համակարգի սահմաններում հեռավորությունները չափելու համար: Այն հավասար է Երկիր-Արեգակ հեռավորությանը, այսինքն՝ երկրային միավորներով 150 մլն կիլոմետր:

Գիտահանրամատչելի գրականության մեջ առավել հաճախ օգտագործվում է լուսատարին: Այն հավասար է մեկ տարում լույսի անցած տարածությանը: Համեմատության համար կարելի է հիշել, որ մեկ աստղագիտական միավոր հաղթահարելու համար լույսին անհրաժեշտ է ընդամենը ութ րոպե:

Աստղագիտական աշխատանքներ կատարելիս ընդունված է հեռավորությունները չափել պարսեկներով: Դա այն հեռավորությունն է, որից նայելիս Երկրի ուղեծրի կիսատրամագիծը, կամ որ նույնն է, աստղագիտական միավորը երևում է մեկ աղեղնային վայրկյան անկյան տակ: Մոտավորապես այդպիսի անկյան տակ է երևում լուցկու հատիկը տասը կիլոմետր հեռավորությունից:

Պարզ հաշվարկները ցույց են տալիս, որ մեկ պարսեկը հավասար է 206265 աստղագիտական միավորի կամ 30860000000000 կիլոմետրի: Չնայած այդ հսկայական մեծությանը, գալակտիկաների աշխարհում հեռավորությունները չափելիս հարմար է օգտվել ավելի մեծ միավորներից՝ կիլոպարսեկից (հազար պարսեկ) և մեգապարսեկից (միլիոն պարսեկ): Մագելլանի Մեծ Ամպը, օրինակ, գտնվում է մեզանից 52 կիլոպարսեկ հեռավորության վրա, Անդրոմեդի միգամածությունը՝ 670 կիլոպարսեկ, իսկ մինչև շատ հայտնի Կույս-A ռադիոգալակտիկան մոտավորապես 12 մեգապարսեկ է. .





# ՊԻՈՆԵՐ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱ-ԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

Հասցեն՝ 375015, Երևան 15. Կարմիր բանակի փողոց 15:
Հեռախոսներ՝ 56-82-72, 58-08-88, 56-14-96:

«Пионер». На армянском языке. Ежемесячный детский журнал ЦК ЛКСМ Армении и Республиканского Совета пионерской организации им. В. И. Ленина. Адрес редакции: 375015, Ереван-15, ул. Кармир банаки, № 15.

## № 4 • ԱՅՍ ՀԱՄԱՐՈՒՄ • 1980



Գլխավոր խմբագիր՝
ԱՆԱՀԻՏ ՍԱՀԻՆՅԱՆ

Խմբագրական կոլեգիա՝
ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ Վ. (պատ. քարտուղար), ԵՍԱՅԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Թ., ԽԱՆԶՅԱՆ ԳՐ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱԿՈԲՅԱՆ Հ., ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ Հ., ՀՈՎՍԵՓՅԱՆ Ռ., ՄԻԼԻՏՈՆՅԱՆ Է., ՍԻՐԱՎՅԱՆ Հ., ՍՄԲԱՏՅԱՆ Կ. (գեղ. խմբագիր):

Տեխ. խմբագիր՝
Հ. ՀԱՄԲԱՐՁՈՒՄՅԱՆ

Վերստուգող սրբագրիչ՝
Հ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

ՎՖ 04708: Պատվեր 312: Տպաքանակ 52144: Տպ. 3 մամ.: Թուղթ՝ $70\times90^{1}/_{16}$: Հանձնված է արտադրության 25/II 1980 թ.: Ստորագրված է տպագրության 2/IV 1980 թ.:

ՀՍՍՀ հրատարակչությունների, պոլիգրաֆիայի և գրքի առևտրի գործերի պետական կոմիտեի Հ. Մեղապարտի անվան պոլիգրաֆկոմբինատ, Երևան—9, Տերյան փ. № 91:

# ԲԱՌԱՇՂԹԱ-ԳԱՂՏՆԱԳԻՐ

1. Համաշխարհային մարզական մեծ միջոցառում: 2. Քաղաք Հունաստանում, որտեղ 1896 թ. առաջին անգամ կայացան վերածնված օլիմպիական խաղեր: 3. 19-րդ դարի ֆրանսիացի մանկավարժ, որի նախաձեռնությամբ 1894 թ. որոշում ընդունվեց վերսկսել օլիմպիական խաղերը: 4. Բռնցքամարտի տերմին: 5. Թեթևատլետիկական գործիք: 6. Սովետական բռնցքամարտիկ, 20-րդ օլիմպիական խաղերի չեմպիոն: 7. Հայ ծանրորդ, աշխարհի եռակի չեմպիոն: 8. Ճապոնացի անվանի ըմբիշ, Մեխիկոյում կայացած 19-րդ օլիմպիական խաղերի չեմպիոն: 9. Սովետական մարմնամարզուհի, 18-րդ օլիմպիական խաղերի չեմպիոնուհի: 10. 7-րդ օլիմպիական խաղերի մայրաքաղաքը: 11. Մարզիկ: 12. Մարզական պարգև: 13. Մարզական խմբավորում: 14. Ամերիկացի թեթևատլետ, 18-րդ օլիմպիական խաղերում 10.000 մ վազքատարածության հաղթող: 15. Մարզական մրցումների սկիզբ: 16. Սովետական թեթևատլետ, 20-րդ օլիմպիական խաղերի բարձրացատկի չեմպիոն: 17. Սովետական մարմնամարզուհի, 21-րդ օլիմպիական խաղերի արծաթե մեդալակիր: 18. Թիմի ղեկավար, դաստիարակ: 19. Սովետական կին թեթևատլետ, 20-րդ օլիմպիական խաղերի գնդի հրման գծով չեմպիոնուհի: 20. Հայ երիտասարդ մարմնամարզիկ, 22-րդ օլիմպիական խաղերի թեկնածու, միջազգային կարգի սպորտի վարպետ: 21. Շվեյցարացի կին դահուկորդ, Սապորրոյի ձմեռային 11-րդ օլիմպիական խաղերի չեմպիոնուհի: 22. Ֆուտբոլային տերմին: 23. Մարզաձև:

Բառաշղթայի հարցերին ճիշտ պատասխանելուց հետո գաղտնագրի շրջանակներում ցույց տրված թվանշանները պետք է փոխարինել բառաշղթայի համապատասխան տառերով, որտեղ համարիչը ցույց է տալիս, թե որ բառի, իսկ հայտարարը՝ այդ բառի որ տառը պետք է վերցնել: Ճիշտ լրացնելուց հետո վերևի շրջանակներում կկարդաք այն քաղաքի անունը, որտեղ տեղի են ունենալու 22-րդ օլիմպիական խաղերը, իսկ օղակների ներսում գտնվող շրջանակներում՝ օլիմպիական խաղերի նշանաբանը:



# ՀԱՅՐԵՆԻ ԲՆՈՒԹՅԱՆ ԳՐԿՈՒՄ



Ինչպես ամեն տարի, անցած ամռանը նույնպես Ծաղկաձորում, Հանքավանում և Վանաձորում հանգստացան Ֆրանսիայից, Կանադայից, Անգլիայից, Ավստրիայից, Քուվեյթից, Երուսաղեմից, Հորդանանից, ԱՄՆ-ից ու աշխարհի այլ երկրներից եկած 227 սփյուռքահայ երեխաներ:

Նրանցից շատերն առաջին անգամ էին լինում հայրենիքում և չէին պատկերացնում Հայաստանի բնությունն ու հրնությունների գեղեցկությունը:

**ՆԿԱՐՆԵՐՈՒՄ.—** Սփյուռքահայ երեխաները Ծաղկաձորում: